# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹ

ՈՒԹՍՈՒՆՄԵԿԵՐՈՐԴ ՏԱՐԻ

**1967**

Վ Ի Ե Ն Ն Ա

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

---

# HANDES AMSORYA

## Zeitschrift für armenische Philologie

Einundachtzigster Jahrgang

**1967**

Wien

Mechitharisten-Buchdruckerei

1157 *Սահակ դարձեալ, Դեկտեմ.* 30։

1163 *Յովհաննէս վրդպ. Կենճեցի, Մարտի* 26։

1164 *Յովհաննէս վրդպ. Բաղիշեցի, Սեպտեմբերի* 7, *սա դարձեալ բաժանեաց զԵրուսաղէմ ի Ստամպօլայ*։

1190 *Յակոբ վրդպ. Ջըմառեցի, աշակերտ Բաղիշեցւոյն, յետ երանելի մահուան նորին Փետրվարի* 15։

1198 *Պրոխորոն վրդպ. Ուռուսճուխցի, նուիրակ յԵրուսաղէմի ինն օր նստաւ*։

1198 *Մինաս վրդպ. Ակնցի. առաջնորդ սուրբ Կարապետու Մշու, որոյ վէքիլ նստաւ Յարութիւն վրդպն.. Պալատցի, մինչեւ բերին զՄինաս վրդպն յԱրզրումայ, որ եմուտ ի Ստամպօլ* 1198*ին*։

1200 *Գեւորգ վրդպ. Ղափանցի, Յունվարի* 13։

1201 *Յակոբ վրդպ. դարձեալ, որ եղեալ էր առաջնորդ Երուսաղէմի, եւ երբ յԵրուսաղէմէ հետ իւր Եաղուպ աղան եւ նստոյց դարձեալ ի Ստամպօլ ՌՄԱ. Մայիսի ԺՁ։ — Յակոբ վարդապետն Ջըմառեան, իբրեւ զամս քսան Պատրիարգութիւնն աւարտեալ, ապա ի թուին ՌՄԺԳ ի Մայիսի ամսոյ ի տկարութեանն ստիպեալ եւ կամ յիշխանաց ոմանց աղաչեցեալ զիւր իշխանութիւնն յԵրուսաղէմայ վէքիլ տէր Մովսիսի թոռն Կոստանդնուպօլսեան Սամաթիացի Գրիգոր վարդապետին շնորհեաց եւ ինքն ի վանքն Իւսկիւտարու մենացաւ ձեռասուն աշակերտօքն եւ զինչս զհաւաքեալս յայսքան ամաց, բաշխեաց զոմանս յեկեղեցական սպասուցն, յէջմիածին յղեաց ի ձեռն Բասենցւոյ Յարութիւն նուիրակ վարդապետին, զոմանս յԵրուսաղէմ, զոմանս ի Տարօն եւ զոմանս յԱստուածածնի եկեղեցւոյն ետ*։

1213 *Գրիգոր վրդպ. Ստամպօլցի*։

*Համեմատելով այս գաւազանագիրքը Պէրպէրեանի լոյս ընծայած երեք գաւազանագրքերու հետ՝ կը տեսնենք որ բաւական տարբերութիւններ կան պատրիարքներու գահակալութիւններու սկզբնաւորութիւններու եւ տեւողութիւններու միջեւ*։

Հ. Հ. ՈՍԿԵԱՆ

# ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ԱԹՈՌԻՆ ԲԱՐՁՈՒՄԸ 11ՐԴ ԴԱՐՈՒՆ ԵՐԿՐՈՐԴ ԿԷՍԻՆ

## Ա.

### ՊԵՏՐՈՍ Ա. (ԳԵՏԱԴԱՐՁ) ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ Կ. ՊՈԼԻՍ ԱՔՍՈՐԸ, ՍԵԲԱՍՏԻԱ ՎԵՐԱԴԱՐՁԸ ԵՒ ՄԱՀԸ

*Կոստանդին Մոնոմախոս կայսրը* (12 *յունիս* 1042—11 *յունուար* 1055), *Անիի եւ Շիրակի բագրատունի թագաւորութեան կցումէն ետք, կը հրամայէ Միխայէլ Իասիթէսի* (*Լաստիվերտցիի Ասիտը*), *որ նախապէս Արեւելքի զօրավար եղած էր եւ, յետոյ, նոր կցուած երկրին կատապան* (*կուսակալ*) *անուանուած, ինչպէս նաեւ մագիստրոս Կոստանդին Ալանին, յարձակիլ Դուինի Ապուլ Ասուար էմիրին վրայ։ Բիւզանդական բանակը, որուն մաս կը կազմէին նաեւ հայկական զօրագունդները, կը ջախջախուի Դուինի առջեւ։ Կայսրը պաշտօնանկ կ'ընէ Իասիթէսը եւ* 1025*ին անոր յաջորդ կը կարգէ Կեկաւմենոս Կաթաքալոնը* (Kekaumenos Katakelon) (*Լաստիվերտցիի Կամենասը եւ Ուռհայեցիի Կամենը*[1])։

[1] *Լաստիվերտցի, Երեւան, էջ* 63, *Վենետիկ*, 1844, *էջ* 42, *Ուռհայեցի, Վաղարշապատ, էջ* 98, *Երուսաղէմ, էջ* 11, *Սմբատ, Վենետիկ, էջ* 42, *Կեդրենոս, Բ, էջ* 559։

Իսկ Թէեւ պատուով կը վարուէր Պետրոս Ա. կաթողիկոսին հետ, սակայն Կեկաւմենոս նոյն յարգանքը ցոյց չի տար (ոչ ըստ առաջին պատուոյն մեծարէ զհայրապետն) եւ կը սկսի գրաւոր ամբաստանութիւններ ներկայացնել անոր դէմ[2]:

Ժամանակակից հայ պատմագիրը՝ Արիստակէս Լաստիվերտցի (11րդ դար) — եւ իրմէ ետք Մատթէոս Ուռհայեցի (11—12րդ դար) չեն պարզած թէ ի՛նչ էին Կեկաւմենոսի ամբաստանութիւնները կաթողիկոսին դէմ, ինչպէս նաեւ չեն անդրադարձած այն հակազդեցութեան զոր բիւզանդական բանակին պարտութիւնը անկասկած գործած պէտք է ըլլալ Անիի եւ Շիրակի բնակչութեան վրայ:

Անիի յանձնումէն առաջ, իշխաններէն ոմանք կը խորհէին քաղաքը յանձնել Դուինի մահմետական իշխանին, որ ամուսնացած էր հայ իշխանուհիի մը հետ, եւ ոմանք ալ Ափխազիայի Թագաւոր Բագարատին, բայց ոչ՝ Բիւզանդիոնի, որուն իր երկիրը կտակած էր Անիի բագրատունի Յովհաննէս Սմբատ Թագաւորը: Պետրոս կաթողիկոս տեսնելով թէ, ինչ որ ալ ըլլայ, քաղաքը եւ Շիրակը պիտի դադրին Հայոց պատկանելէ, դիմեց Արեւելքի բիւզանդական կուսակալին, որ Սամոսատ կը նստէր, եւ ուզեց գիտնալ թէ կայսրը ի՞նչ փոխարինութիւն պիտի ընէր եթէ քաղաքը անոր յանձնէր: Կայսրը, գանձիւք եւ իշխանութեամբ հանեալ զկամս նորա (Պետրոսի), քաղաքը յանձնուեցաւ Բիւզանդիոնի[3]:

Այսպէս կը պատմէ Լաստիվերտցի Անիի յանձնումը: Բայց Մատթէոս Ուռհայեցի, որ թէեւ ժամանակակից է Լաստիվերտցիին, սակայն, ըստ իր յայտարարութեան, Անիի յանձնումին եւ ուրիշ դէպքերու վերաբերեալ իր տեղեկութիւնները քաղած է բանաւոր եւ կորսուած գրաւոր աղբիւրներէ, բոլորովին տարբեր կերպով կը ներկայացնէ դէպքերը, բայց եթէ քաղաքին յանձնումին ամբողջ պատասխանատուութիւնը անոր չի վերագրեր, կ'արձանագրէ անոր կրաւորական կամ գործօն դերը Գագիկ Բ.ի դաւադրաբար Պոլիս առաջքումին մէջ[4]:

Պատասխանատուութեան նոյն բաժանումը կ'ընէ նաեւ Սամուէլ Անեցի, որ կը գրէ. Տէր Պետրոս եւ ազատ Սարգիս եւ Գրիգոր Բջնեցին (Մագիստրոս) նենգեցին զԳագիկ եւ զԱնի ետուն ի կայսրն Յունաց[5]:

Ինչ որ ալ եղած ըլլայ Պետրոս Ա.ի պատասխանատուութեան բաժինը Բագրատունեաց թագաւորութեան կործանումին մէջ — բուն պատասխանատուն Յովհաննէս Սմբատ Թագաւորն է, որ իր երկիրը կտակեց Բիւզանդիոնի — տարակոյս չկայ թէ Անիի յանձնումին մասին կատարուած խորհրդակցութեանց մէջ բիւզանդական կողմնորոշման գլխաւոր կուսակիցը եղած է: Ուրիշ խօսքով, բիւզանդական տիրապետութիւնը նախընտրած է մահմետական կամ ափխազական տիրապետութենէն: Այս է պատճառը որ «դաւաճան» որակուած է յաջորդ դարերուն, բայց ոչ՝ ժամանակակից Լաստիվերտցիէն եւ Ուռհայեցիէն:

Արդ, ի՞նչպէս «բիւզանդասէր» կամ «Բիւզանդիոնի ծախուած» Պետրոս կաթողիկոս Կեկաւմենոսի պաշտօնակոչումէն ատեն մը ետք առարկայ եղած է ամբաստանութեանց, որոնք կայսրը մղած են Պետրոսը հեռացնել Անիէն, եւ ոչ միայն Պետրոսը, այլ եւ անոր երկու կրօնաւոր քեռորդիները:

Հեռացումը, իրականութեան մէջ՝ աքսորը, տեղի կ'ունենայ հետեւեալ ձեւով: Նախ Պոլիսէն Անի կու գայ բարձրաստիճան ներքինի մը, որ ունէր զպատիւ կէս թագաւորութեան, եւ Պոլիս կը տանի Պետրոսին երէց քեռորդին: Յետոյ, Կեկաւմենոս Պետրոսը խաբանօք կը հանէ Անիէն եւ կ'ըսէ թէ կայսեր հրամանով իր բնակութիւնը պէտք է հաստատէ Կարնոյ գաւառին Արծն քաղաքը: Հայրապետը, հնազանդելով կայսերական հրամանին, կու գայ Արծն, ուր Արիստակէս Լաստիվերտցի, ինչպէս կը հետեւի իր տողերէն, զինքը կը տեսնէ, եւ ժողովուրդն ալ

---

[2] Լաստիվերտցի, Երեւան, էջ 63, Վենետիկ, էջ 43:

[3] Լաստիվերտցի, Երեւան, էջ 62, Վենետիկ, էջ 42:

[4] Ուռհայեցի, Վաղարշապատ, էջ 93—95, Երուսաղէմ, էջ 109—110:

[5] Սամուէլ Անեցի, էջ 107:

կ'ուրախանայ: Աստուածայայտնութեան տօնին, Ջրօրհնէքի արարողութենէն ետք, ճաշի սեղանին վրայ, գինուորներ կու գան եւ կաթողիկոսը կը տանին Խաղտոյառիճ բերդը: Յետոյ Անիէն կը բերեն նաեւ Պետրոսին միւս քեռորդին՝ Խաչիկ Բ.ը — զոր Պետրոս կաթողիկոս օծած էր Անիէն հեռանալէ առաջ, խորհելով որ Յոյները կրնային իր վերադարձը արգիլել — եւ կը բանտարկեն Սեւուքար կոչուած բերդը: Երկու կաթողիկոսները բերդարգել կը մնան մինչեւ նոյն տարուան զատիկը եւ, յետոյ, կը փոխադրուին Պոլիս[6]: Կայսրը կաթողիկոսը կ'ընդունի մեծ պատիւներով եւ կը հրամայէ առատ ռոճիկ յատկացնել անոր, բայց չ'արտօներ որ Հայաստան վերադառնայ, կասկածելով որ Անին կ'ապստամբեցնէ: Երեք տարի ետք, Սեբաստիայի Ատոմ իշխանին երաշխաւորութեամբ, կ'արտօնուի Սեբաստիա հաստատել իր բնակութիւնը: Ատոմ անոր կը յատկացնէ Ս. Նշանի վանքը: Երկու տարի ետք կը վախճանի եւ հոն կը թաղուի[7]:

Մատթէոս Ուռհայեցի բոլորովին տարբեր կը պատմէ Պետրոսին Պոլիս մեկնումը ՆՂԸ (498 = 9 մարտ 1049—8 մարտ 1050) տարուան դէպքերուն կարգին:

Այս տարի, կը գրէ, Մոնոմախ կայսրը Պետրոսը նամակով մը Պոլիս հրաւիրեց: Կաթողիկոսը իր յօժար կամքով մեկնեցաւ, եւ պատմելէ ետք Խաչիկին օծումը եւ միւռոնի գաղտնի օրհնութիւնը, կը նկարագրէ անոր չքախումբը, որուն կրօնական եւ զինուորական անդամներուն թիւը կը հասնի շուրջ 650ի: Կաթողիկոսը Պոլիս կ'արժանանայ արտակարգ պատիւներու: Չորս տարի ետք, կայսրը եւ յոյն պատրիարքը մեծագումար ընծաներ, ոսկի եւ արծաթ դիպակներ, զանազան զարդեղէններ կը նուիրեն Պետրոսին, իսկ անոր ընկերացող ազատներուն՝ իշխանական տիտղոսներ: Պետրոսին երէց քեռորդին՝ Անանիա կամ Ստեփանէ[8], որ նախապէս Պոլիս տարուած էր, սինգելոս կ'ըլլայ: Պետրոս կը վերադառնայ հանդերձ մեծամեծ տրօք. եւ ի քաղաքն Անի ոչ ժամանեաց, այլ երթեալ բնակէր ի Սեբաստիա քաղաքն առ ազգն Սենեքարիմայ մեծաւ փառաւորութեամբ[9]:

Ակնրախ է հակասութիւնը Լաստիվերտցիի եւ Ուռհայեցիի տեղեկութիւններուն միջեւ, սակայն տարակոյս չկայ թէ միակ վստահելի աղբիւր Լաստիվերտցին է:

Պետրոս Ա. ոչ 1049—1050ին իր յօժար կամքով Պոլիս մեկնած է եւ ոչ ալ աւելի առաջ, պատասխանելով կայսերական հրաւէրի մը:

Ուռհայեցիի այն հատուածը որ կը վերաբերի Պետրոս Ա.ի Պոլիս մեկնումին գրական խարդախութիւն մըն է, որուն հեղինակը — Ուռհայեցին նոյն ինքն կամ ուրիշ մը — գիտակցօրէն, բայց միամտօրէն, կարծած է թէ ճշմարտութիւնը չարափոխելով իրականութիւնը գոյութիւն ունեցած չ'ըլլար: Յօժար կամքով բառերը ցոյց կու տան հեղինակին նպատակը՝ հերքել Պետրոս կաթողիկոսին բռնի հեռացումը, բերդարգելութիւնը եւ, ի վերջոյ, պատուաւոր աքսորը Սեբաստիա:

Իրականութիւնը այն է որ շուրջ 650 հոգիէ բաղկացած չքախումբով մը Անիէն մեկնումը կը վերաբերի ոչ թէ Անիէն հեռացումին, այլ 1021ին Վասիլ Ա.ի հրաւէրով կամ Յովհաննէս Սմբատի հրամանով Տրապիզոն կատարած ուղեւորութեան, որուն միջոցին պատահած է Ջրօրհնէքի առասպելական արարողութիւնը: Բարեբախտաբար այս պարագան կը հաստատէ մինչեւ 1915 Արմաշի վանքը պահուած անթուական եւ անանուն ժողովածու մը[10]:

---

[6] Լաստիվերտցի, Երեւան, էջ 63—64, Վենետիկ, էջ 43—44:

[7] Լաստիվերտցի, Երեւան, էջ 82, Վենետիկ, էջ 60:

[8] Սմբատ, Վենետիկ, էջ 46, Անանիայի փոխարէն ունի տէր Ստեփանէ:

[9] Ուռհայեցի, Վաղ., էջ 104—107, Երսմ., էջ 122—125: — Ըստ Ուռհայեցիի, Պետրոս գաղտնօրէն 400 լիտրի չափ միւռոն կ'օրհնէ եւ երկաթէ ամուր ամանի մը մէջ կը թաղէ Ախուրեան գետին մէջ (անդ) (Սմբատի մէջ համառօտ): Չամչեան առասպել կը համարի այս թաղումը (Բ, էջ 1031), իսկ Օրմանեան (Ազգապատում, էջ 1235) կը հաւատայ այս տեղեկութեան ստուգութեան եւ կ'ըսէ թէ կրնայ գրգռել Անիի մէջ պեղում կատարողներու հետաքրքրութիւնը:

[10] Յ. Թօփճեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Արմաշի վանքի, էջ 402բ:

Լաստիվերտցիին եւ Ուռհայեցիին յաջորդները Վարդան եւ Կիրակոս Գանձակեցի Պետրոս Ա.ի կեանքին այս դրուագին մասին շատ կարճ տեղեկութիւններ հաղորդած են:

Վարդան (13րդ դար) պարզապէս կը գրէ թէ Պետրոս Մոնոմախին գնաց եւ դարձաւ Սեբաստիա, ուր Սենեքերիմի որդիները անոր յատկացուցին Ս. Նշանի վանքը, ուր մէկ տարի ետք վախճանեցաւ[11], բայց, շարունակութեան մէջ, աւելի բացորոշ կերպով կ'ըսէ թէ Յոյները վերացուցին ի նմանէ (յԱնւոյ) զերկոսեան պսակս՝ զգահ հայրապետութեան եւ զթագաւորութեան, յակամայս ածեալ զերկոսեան առ իւրեարս, եւ անդրէն ոչ դարձուցեալ (էջ 99): Վարդան կը հաւաստէ նաեւ թէ կայսրը անոր շնորհած է երեք պրաստին (գիւղ)[12], տեղեկութիւն զոր ուրիշ ոչ մէկ աղբիւր կը հաստատէ, եւ որ հաւանականաբար շփոթութիւն մըն է Խաչիկ Բ.ի տրամադրուած երկու վանքի պատմութեան հետ:

Կիրակոս Գանձակեցի (13րդ դար) դէպքը կը պատմէ առանց ժամանակագրական կարգի, եւ Պետրոս Ա.ի Պոլիս հրաւէրը, եւն. յիշելէ ետք կ'աւելցնէ. հրամայեաց կայսր դնել զաթոռ իւր (Պետրոսի) ի Սեբաստիա եւ անտի հովուել զհօտ իւր[13]:

13րդ դարու երրորդ մատենագիր մը Մխիթար Այրիվանեցի 1045ի եւ 1050ի դէպքերու շարքին, Անիի բիւզանդական գրաւումէն ետք, կը պատմէ թէ կայսրը եհան յաշխարհէ մերմէ զկաթողիկոսն տէր Պետրոս եւ նստոյց ի Սեբաստիա, եւ անտի այսր ոչ եկն առ մեզ (ի Հայս) կաթողիկոս[14]:

Վերջապէս, ըստ Սիմէոն Երեւանցիի (18րդ դար) Հայոց ՇԳ տարին (18 մարտ 1054—7 մարտ 1055) Պետրոս իր քեռորդին՝ Խաչիկը իր տեղը կաթողիկոս դնելէ ետք Պոլիս մեկնած է եւ չորս տարի ետք Սեբաստիա դարձած[15]:

2. Բաց ի Լաստիվերտցիէն, միւս պատմագիրները չեն պարզած թէ ի՞նչ պարագաներու մէջ Պետրոս Պոլիս գացած է եւ թէ ինչո՞ւ չէ վերադարձած Անի, որ կաթողիկոսանիստ քաղաքն էր անոր օրով:

Ըստ Լաստիվերտցիի, Կեկաւմենոսի ամբաստանութիւններն են Պետրոսի մասին որ անոր նախ տեղափոխութեան եւ յետոյ բանտարկութեան պատճառ եղած են: Բերդարգելութիւնը այնքան անպատուաբեր վարմունք մըն է կաթողիկոսի մը հանդէպ որ ենթադրել կու տայ ամբաստանութեանց ծանրակշիռ բնոյթը:

Թէ ամբաստանութիւնները հիմնաւոր էին կամ ոչ՝ հարցում մըն է որուն կարելի չէ պատասխանել: Անիի գրաւումէն մինչեւ Ալփարսլանի գրաւումը (1024—1064) քաղաքին ներքին կեանքը անծանօթ է: Միայն Կիրակոս Գանձակեցիի ոչ շատ յստակ մէկ վկայութենէն կը հետեւի թէ ներքին երկպառակութիւն կը տիրէր: Իսկ բնակիչք աշխարհիս, կը գրէ, զմիմեամբ ելանելով անձոռնի յոխորտանօք եւ ի միմեանս յարձակեալ խորամանկութեամբ եւ ստորնաբանութեամբ խորհէին մատնել զմիմեանս կայսեր, բաղբաղեալ ձեռն տալն առ Հագարացիսն, որք եւ իշխանացն անգամ զհայրապետն, եւ նորա զնոսա, զոր յոչ կամայս առեալ տանէին ի բնակութենէ իւրեանց: Իսկ մնացեալքն իբրեւ անտերունչս անկուշեալ կիցս ընկենուին Յունաց ամս քսան եւ մի[16]:

Այս տողերը եթէ մասամբ կը պատշաճին քաղաքին յանձնումէն առաջ ներքին պայքարներուն, առաւելապէս կը վերաբերին քաղաքին յանձնումէն ատեն մը ետք ստեղծուած կացութեան: 1024էն ետք, իշխաններէն ոմանք ի՞նչ ամբաստանութիւն կրնային ներկայացնել կայսեր Պետրոս Ա.ի դէմ: Պետրոս «բիւզանդասէր» էր, եւ իշխանները չէին կրնար զայն ամբաստանել իբրեւ այդ, այլ միայն իբրեւ հակաբիւզանդական քաղաքականութեան մը պարագլուխը: Արդեօք 1024էն ատեն մը ետք, կաթողիկոսը զըդ-

---

11 Վարդան, Վենետիկ, 1862, էջ 98—99:

12 Վարդան, էջ 98:

13 Գանձակեցի, Երեւան, էջ 95, Վենետիկ, 1865, էջ 54: — Ծուրլ էջ 91, տող 10էն մինչեւ էջ 93, տ. 11, գրեթէ բառացիօրէն կը գտնուի Սամուէլ Անեցիի մէջ: Եթէ այս տողերը Սամուէլ Անեցիի մէջ ընդմիջարկութիւն մը չեն, երկու մատենագիրները նոյն աղբիւրէն (Ուռհայեցի) օգտուած ըլլալ կը թուին:

14 Այրիվանեցի, էջ 58:

15 Սիմէոն Երեւանցի, Ջամբռ, էջ 15:

16 Գանձակեցի, Երեւան, էջ 92, Վենետիկ, էջ 60:

*ջալով նախապէս իր հետեւած քաղաքականութեան վրայ «Հազարացիներ»ուն (մահմետականներուն) հետ գործակցելո՞ւ հակամէտ էր:*

*Ուշադրութեան արժանի պարագայ մըն է որ Լաստիվերտցի չի գանգատիր թէ կայսեր նպատակն էր կաթողիկոսութիւնը ջնջել, ոչ ալ թէ ժողովուրդը անհանդուրժելի կը գտնէր տուրքերու ծանրութիւնը*[17]*: Նոյն իսկ Կիրակոս Գանձակեցի, որ կաթողիկոսութեան բարձումին չէր կրնար անտեղեակ ըլլալ, միմիայն փոխադարձ զրպարտութեանց եւ ամբաստանութեանց կը վերագրէ կաթողիկոսին եւ իշխաններէն ոմանց հեռացումը Անիէն:*

*Հիմնաւոր կամ ոչ, ամբաստանութիւնները այն համոզման մղած են կայսրը թէ Պետրոս եթէ վերադառնայ Անի՝ քաղաքը կ'ապստամբեցնէ*[18]*, եւ միայն Սեբաստիայի Ատոմ իշխանին երաշխաւորութեամբ արտօնած է Սեբաստիա հաստատել իր բնակութիւնը: Երաշխաւորութիւնը կրնայ վերաբերիլ միայն այն հաւաստումին թէ Պետրոս Ա. ոեւէ ձեռնարկ պիտի չընէր բիւզանդական շահերուն հակառակ: Պետրոսին վախը թէ Անիէն հեռացուելէ ետք կրնար այլեւս հոն չվերադառնալ անտեղի չէր ուրեմն. եւ ցոյց կու տայ թէ իրեն դէմ ներկայացուած ամբաստանութիւնները թեթեւօրէն չէին կրնար հերքուիլ:*

*Անտեղի պիտի ըլլար փորձել ճշտել այս ամբաստանութեանց բնոյթը, աղբիւրներու անբաւականութեան հետեւանքով: Թերեւս հարկապահանջութեանց խստութիւնն էր որ ժողովուրդը թշնամացուցած էր Բիւզանդիոնի դէմ եւ Պետրոս Ա. դժգոհութիւնները մեղմացնելու ջանադիր չէր: Հաւանական չէ որ դաւանական միութեան խնդիր եղած ըլլայ, որովհետեւ, այդ պարագային, կաթողիկոսը իբրապէս մեծ պատիւներով պէտք էր Պոլիս տարուիլ, եւ ոչ թէ անարգական կալանաւորութեամբ բերդարգելութեան մատնուէր: Բիւզանդական իշխանութիւնները Պետրոս Ա.ի Պոլիս փոխադրութենէն ետք է որ կաթողիկոսական աթոռը բառնալու որոշումը տուած ըլլալ կը թուին:*

*3. Իրապէս, Պետրոս Ա.ի եւ Խաչիկ Բ.ի Անիէն հեռացումէն ետք կը սկսի 11րդ դարուն երկրորդ կէսին Հայոց կաթողիկոսութեան ժամանակաւոր բարձումը, մինչեւ Գրիգոր Վկայասէրին ընտրութիւնը:*

*Անհրաժեշտ է, հետեւաբար, ճշտել երկու կաթողիկոսներուն Անիէն հեռացման տարեթիւը, յետոյ, անոնց արգելակալման տեւողութիւնը Պոլիս, եւ, ի վերջոյ, Պետրոս Ա.ի կեանքին տեւողութիւնը Սեբաստիայի մէջ:*

*Դժբախտաբար ծանօթ աղբիւրները թոյլ չեն տար ճշգրիտ ժամանակագրութիւն մը կազմել:*

*Ինչպէս արդէն յիշուեցաւ, Լաստիվերտցի, Վարդան եւ Գանձակեցի ոչ մէկ տարեթիւ կը նշեն: Միայն Ուռհայեցին, եւ անկէ քաղելով Սմբատ, ՆՂԸ* (498 = 9 *մարտ* 1049—8 *մարտ* 1050) *տարուան դէպքերուն կարգին կը դնեն Մոնոմախոսի հրաւէրը Պետրոսին*[19]*, իսկ Սիմէոն Երեւանցի ՇԳ* 503 = 8 *մարտ* 1054—7 *մարտ* 1055*ին*[20]*:*

*Զարմանալի չէ, հետեւաբար, որ մեզի ժամանակակից պատմաբանները տարբեր թուականներու տակ յիշեն Պետրոս Ա.ին հեռացումը Անիէն, Չամչեան դէպքը կը պատմէ* 1048 *տարուան տակ*[21]*, իսկ Օրմանեան* 1046*ին կ'ընդունի հեռացման թուականը, եւ Խաղտոյառիճ բերդէն Պոլիս փոխադրութիւնը՝* 1047*ի զատկին* (16 *ապրիլ*[22])*: Ինքնին կը հետեւի թէ Խաչիկ Բ.ի հեռացումն ալ տեղի ունեցած է քանի մը ամիս կամ առաւելն մէկ տարի ետք:*

*Աղբիւրներուն միջեւ համաձայնութիւն գոյութիւն չունի նաեւ կաթողիկոսներուն Պոլիս արգելակալման տեւողութեան մասին: Ըստ Լաստիվերտցիի* երեք[23]*, ըստ Ուռ-*

---

[17] Cyril Toumanoff, The Cambridge Medieval History. IV. *The Byzantine Empire.* Part I. *Byzantium and its Neighbours*, p. 620.

[18] *Լաստիվերտցի, Երեւան,* էջ 82, *Վենետիկ,* էջ 60:

[19] *Ուռհայեցի, Վաղ.,* էջ 102, *Երմ.,* էջ 119:

[20] Զամրո, էջ 15:

[21] *Չամչեան, Բ,* էջ 944:

[22] *Օրմանեան,* Ազգապատում, էջ 1234, 1244:

[23] *Լաստիվերտցի, Երեւան,* էջ 82, *Վենետիկ,* էջ 60:

Հայեցիի[24], Սմբատի[25], ժամանակագրական հատակոտորի մը[26], Գրիգոր Դարանաղցիի ժամանակագրութեան[27], Սիմէոն Երեւանցիի[28] չորս տարի, Չամչեանի[29] երեք, Օրմանեանի[30] մինչեւ 1051, այսինքն երեք կամ չորս տարի:

Նոյն անհամաձայնութիւնը Պետրոս Ա.ին Սեբաստիա ապրած տարիներուն առթիւ: Ըստ Լաստիվերտցիի երկու[31], ըստ Վարդանի մէկ[32]: Չամչեան, մեկնաբանելով Լաստիվերտցիին վկայութիւնը, կը հաւաստէ թէ Ատոմ կաթողիկոսը երկու տարի իր անմիջական հսկողութեան տակ պահելէ ետք է որ անոր յատկացուցած է Ս. Նշանի վանքը, ուր հինգ տարի եւս ապրելէ ետք վախճանած է[33]: Այս մեկնութեամբ կը ջանայ հաշտեցնել Լաստիվերտցիի վկայութիւնը թէ Պետրոս Ա. Անիէն հեռացուելէ ետք հինգ տարի միայն ապրած է: Օրմանեան ալ, նոյն նպատակով, եօթը տարի կ'ենթադրէ Պետրոս Ա.ի կեանքը Սեբաստիայի մէջ[34]:

4. Ոչ մէկ մատենագիր լրիւ ներկայացուցած է Պետրոս Ա.ին կենսագրութիւնը Անիէն հեռացումէն մինչեւ իր մահը, եւ մասնակի ու անհամաձայն տեղեկութեանց վրայ հիմնուելով կարելի է ընել միայն առաւել կամ նուազ հաւանական ենթադրութիւններ:

Ըստ Լաստիվերտցիի եւ Վարդանի, Պետրոս Ա. մէկ կամ երկու տարի ապրած է Սեբաստիա, Պոլիս արգելակալման տեւողութիւնը ըլլալով երեք կամ չորս տարի, որով Անիէն հեռացուելէն մինչեւ մահը ապրած կ'ըլլայ 5 տարի:

Վախճանած ըլլալով 1058ին[35], այս հաշուով Անիէն հեռացուած պէտք ըլլայ 1053ին: Այս թուականը մօտաւորապէս կը համապատասխանէ Սիմէոն Երեւանցիին յիշած 1054—1055 թուականին: Սակայն յայտնի չէ թէ 18րդ դարու այս հեղինակը համանման հաշիւո՞վ մըն է որ յանգած է այս թուականին թէ քաղած է զայն մեզի անծանօթ աղբիւրէ մը:

Այսու հանդերձ, այս թուականին ի նպաստ է Սամուէլ Անեցիի ժամանակագրութեան հետեւեալ հատուածը, որ թէեւ ընդմիջարկութիւն մըն է (տեղեկութիւն Պ. Լ. Խաչիկեանի), սակայն ընդմիջարկութեան հեղինակը անտարակոյս զայն քաղած է կորսուած կամ դեռ անծանօթ աղբիւրէ մը.

ՌԾԷ (1057), Տէր Պետրոս ի գնալն առ Մոնոմախ թագաւոր յԸստմբոլ, օրհնէ զտէր խաչիկ քուերորդին իւր ի ՇԲ (502—8 մարտ 1053—7 մարտ 1054) թվին եւ թողու ի տեղի իւր[36]:

Առաջին թուականը յայտնօրէն արդիւնք է գրչագրական սխալի մը եւ պէտք է ուղղել ՌԾԲ (Մոնոմախ մեռած է 11 յունուար 1055ին), սակայն 1053ը պիտի համապատասխանէր այն տարիին, ուր Պետրոս Ա.

---

[24] Ուռհայեցի, Վաղ., էջ 106, Երուս., էջ 125:

[25] Սմբատ, Վենետիկ, էջ 46:

[26] Տաշեան, Ցուցակ Վիեննայի, էջ 871ա:

[27] Գրիգոր Դարանաղցի, Վ. Ա. Յակոբեան, Մանր ժամանակագրութիւններ, 2, էջ 263:

[28] Ջամբռ, էջ 15:

[29] Չամչեան, Բ, էջ 1048:

[30] Օրմանեան, Ազգապատում, էջ 1234, 1238, 1244, 1245:

[31] Լաստիվերտցի, Երեւան, էջ 82, Վենետիկ, էջ 60:

[32] Վարդան, էջ 99:

[33] Չամչեան, Բ, էջ 1048:

[34] Օրմանեան, Ազգապատում, էջ 1248:

[35] Պետրոս կաթողիկոսին մահուան թուականը ըստ աղբիւրներու. ՇԶ 506 = 7 մարտ 1057—6 մարտ 1058 (ըստ Սամուէլ Անեցիի ձեռագիրներէն ոմանց), Դաւիթ Բաղիշեցիի (17րդ դար, Մանր ժամանակագրութիւններ, 2, էջ 339), Անանուն ժամանակագրութեան մը (17րդ դար, Մանր ժամանակագրութիւններ, 1, էջ 203, Ժամանակագրական հատակոտոր մը (Տաշեան, Ցուցակ Վիեննայի, էջ 871):

1058ը Պետրոս Ա.ի մահուան ընդունուած թուականն է: Սակայն Ուռհայեցի ՇԷ (7 մարտ 1058—6 Մարտ 1059) տարուան դէպքերուն մէջ, ուր կը յիշէ Տուկիծ կայսեր դահակալութիւնը (25 դեկտեմբեր 1059), կը նշէ նաեւ Պետրոս Ա.ի մահը: Հետեւաբար, կաթողիկոսը կրնայ վախճանած ըլլալ 1059ի 1 յունուար—6 մարտ թուականին միջեւ: ՇԷ (507 = 7 3. 1059—6. 3. 1060): Ըստ Ուռհայեցիի, Երուս., էջ 151 (Վաղ., էջ 127, ուր ՇԵը պէտք է ուղղել ՇԷ), Սմբատ, Մոսկուա, էջ 56, Փարիզ, էջ 71, նոյնպէս ունին ՇԵ, զոր պէտք է ուղղել ՇԷ, Սմբատ, Վենետիկ, էջ 54, Սամուէլ Անեցի, էջ 112 (ըստ ոմանց ՇԶ), Անթուակիր Յայսմաւուրք մը (Գ. Յովսէփեան, Յիշատակարանք ձեռագրաց, Ա, էջ 419, Պաղտասար Դպիրի ժամանակագրութիւն, Մանր ժամանակագրութիւններ, 1, 342, Յայսմաւուրք Վիեննայի Մխիթարեանց, Տաշեան, Ցուցակ Վիեննայի, էջ 92ա):

[36] Սամուէլ Անեցի, էջ 111:

*հեռացուած պիտի ըլլար Անիէն, եւ 1054ին Պոլիս փոխադրուելով հոն երեք կամ չորս տարի ապրելէ ետք երկու կամ մէկ տարի ալ Սեբաստիա ապրած պիտի ըլլար մինչեւ իր մահը՝* 1058։

1053էն *մէկ տարի տարբերութիւն ունի* 1052—1053 *թուականը որ նշուած է Պետրոս Ա.ին վերաբերեալ ուրիշ յիշատակագրութեան մը մէջ։ Անանուն ժամանակագրական հատակոտոր մը, որ ընդօրինակուած է* 17*րդ դարուն եւ կը կրէ «Բանք նշանակօղք թուականին Հայոց» խորագիրը, կը պարունակէ, ի մէջ այլոց, հետեւեալ կաբեւոր թուականները.*

ԱՃՀԱ (722) թուին Յոհան Օձնեցին պայծառացաւ ի Հայս։

ՅԽԱ (892) թուին տէր Մաշտոցն պայծառանայր։

ՇԱ (8 *մարտ* 1052—7 *մարտ* 1053) տէր Պետրոս կաթուղիկոս Գետադարձն պայծառացաւ[37]։

Պայծառանալ *բառով Անանուն հեղինակը, որ անտարակոյս հնագոյն ժամանակագրութենէ մը քաղած է այս թուականները, նշել ուզած է Յոհան Օձնեցի, Մաշտոց եւ Պետրոս Ա. Գետադարձ կաթողիկոսներուն կեանքին մէջ նշանաւոր թուական մը։*

*Յոհան Օձնեցիին վերաբերեալ թուականը գտած է, ըստ երեւոյթին, Սամուէլ Անեցիի կամ անոր մէկ աղբիւրին մէջ, ուր կ'ըսուի.*

Ի ՃՀԲ (723—724) թուին ս. իմաստասէրն Յոհան Օձնեցին կանոնական կարգօք *պայծառացոյց* զեկեղեցի. զսա կոչէ ամիրապետն ի դուռն իւր եւ վասն առաւել վայելչութեան սորայ պատուէր զսա մեծագոյն պատւով[38]։

*Նոյն աղբիւրէն քաղած ըլլալ կը թուի նաեւ Մաշտոցի կաթողիկոսին վերաբերեալ յիշատակութիւնը.*

ՊԴԴ (894 = 892) ՅԽԱ (892—893). Տէր Մաշտոց եգնեւորական հանդիսիւ եւ իմաստասիրական հանդիսիւ *պայծառանայր*...[39]։

*Դժբախտաբար, Սամուէլ Անեցիի մէջ Պետրոս Ա.ին* պայծառացումին *մասին յիշատակութիւն մը կարելի չեղաւ գտնել։ Սակայն, տարակոյս չերծ է թէ* 1052—1053 *տարիներուն Պետրոս Ա. կատարած է գործ մը, որ զինքը արժանի ըրած է Օձնեցիի եւ Մաշտոցին նման փառատակուոր եւ բարեհամբաւ կաթողիկոսներու համապատիւ համարուելու։*

1052—1053 *տարիներու ընթացքին Պետրոս Ա.ի կեանքին մէջ միակ ծանօթ արարքը, եթէ Սամուէլ Անեցիի եւ Սմբատ Երեւանցիի հաղորդած տեղեկութեանց կարելի ըլլայ հաւատ ընծայել, Անիէն հեռանալու հրամանը ստանալէն ետք, իր քեռորդւոյն կաթողիկոսական օծումն է, որով հայրապետական աթոռին տեւականութիւնը կ'ուզէր ապահովել ամէն պատահականութեան դէմ։*

*Այս երկու մատենագիրներուն եւ Անանուն ժամանակագրական հատակոտորին վրայ հիմնուելով, Պետրոս Ա. Անիէն հեռացած պիտի ըլլար* 1052—1053, 1053—1054 *եւ* 1054—1055 *տարիներէն մէկուն ընթացքին եւ յաջորդ տարին՝ Պոլիս փոխադրուած։ Եթէ ճիշդ համարուի թէ Պոլիս եւ Սեբաստիա ապրած տարիներուն թիւը հինգ է, Անիէն հեռացման թուականը պէտք պիտի ըլլար ընդունիլ* 1053*ը։*

*Սակայն այս լուծումը ոչ միայն գլխովին կը հակասէ Լաստիվերտցիի նման ժամանակակից եւ ականատես կամ ականջալուր մատենագրի մը վկայութեան, այլ եւ Մոնոմախ կայսեր ժամանակագրութեան։*

*Եթէ Պետրոս Ա. Մոնոմախ կայսեր արտօնութեամբ իր բնակութիւնը հաստատած է Սեբաստիա, — եւ մինչեւ որ հակառակը փաստուի, պարտաւոր ենք ստոյգ համարել այս տեղեկութիւնը — արտօնութեան ամենավերջին թուականը կրնայ ըլլալ* 1054, *այսինքն Մոնոմախի մահէն* (11 *յունուար* 1055) *առաջ։ Այս պարագային Պետրոս Ա. առնուազն երկու տարի ապրած պիտի ըլլար Պոլիս, ինչ որ բոլոր վկայութեանց հակառակ է։*

*Եթէ սակայն ոչ թէ Մոնոմախի այլ անոր թագուհիին՝ Թէոդորային կարճատեւ իշխանութեան* (11 *յունուար* 1055—21 *օգոս-*

---

[37] Մանր ժամանակագրութիւններ 1, էջ 396 (*ԺԲ ժամանակագրութիւն*)։

[38] *Սամուէլ Անեցի, էջ* 87։

[39] *Սամուէլ Անեցի, էջ* 95։

տոս 1056) շրջանին է որ Պետրոս Ա. Սեբաստիա վերադարձած է, Լաստիվերտցիի վկայութեան համաձայն երեք տարի (1054—1056) Պոլիս եւ երկու տարի (1057—1058) Սեբաստիա ապրած կ'ըլլայ (Պետրու Ա·ի մահուան տարին ծանօթ է բայց ոչ ամիսը)։

Այս պարագային պիտի արդարանար 1053ին Պետրոս Ա·ին պայծառացումին վերեւ տրուած մեկնութիւնը։

Այս բոլոր կարելութիւնները կը բախին Լաստիվերտցիին այն վկայութեան թէ Կեքաւմենոսի օրով է որ Պետրոս Ա. հեռացուած է Անիէն եւ տարի մը ետք Պոլիս փոխադրուած։

Կեքաւմենոս, որ 1025ին Անի կը գտնուէր, 1047ին Պոլիս կանչուած էր մայրաքաղաքը պաշտպանելու համար ապստամբ Թոռնիկիոսի (Թոռնիկ) դէմ։ 1048ին Անի վերադարձած եւ նոյն տարին, Վասպուրականի դուքս Ահարոնին հետ ջախջախած էր երկու թշնամի բանակներ։ 1049—1050ին, իբրեւ Արեւելքի ստրատելատ, Փեչենեկներուն (Պածինակ) դէմ մղուած պատերազմին մէջ գերի ինկած եւ միայն 1053ին Պոլիս վերադարձած էր[40]։ Հետեւաբար, եթէ իր պաշտօնավարութեան առաջին երեք տարիներուն ընթացքին ամբաստանած ըլլար կաթողիկոսը, Անիէն հեռացման թուականը ոչ 1053, ոչ 1049 եւ ոչ ալ 1047 պիտի ըլլար, այլ աւելի առաջ, ինչ որ բացարձակօրէն անընդունելի պիտի ըլլար։ Կեքաւմենոս նոյն իսկ 1047ին կայսեր կրնար ներկայացնել իր ամբաստանութիւնները։ Եթէ իրապէս Կեքաւմենոսի օրով է որ Պետրոս Ա·ին հեռացումը տեղի ունեցած է, ամէնէն ուշը 1049ին կրնայ եղած ըլլալ, եւ այս տարեթիւը կը համապատասխանէ Մատթէոս Ուռհայեցիին եւ Սմբատին յիշած տարիին, (9 մարտ 1049— մարտ 1050)[41] սակայն այս պարագային, Պետրոս Ա·ի վախճանումը տեղի ունեցած պիտի ըլլար 1054ին կամ 1055ին, ինչ որ բոլորովին կը հակասէ մահուան ստոյգ թուականին (1058)։

Այսպէս, ինչ մեկնութիւն ալ փորձուի հակասական եւ թերի տեղեկութիւնները հաշտեցնելու համար, ստոյգ եզրակացութեան մը կարելի չէ յանգիլ։ Հետեւաբար առայժմ պէտք է գոհանալ ըսելով որ Պետրոս Ա· իր քեռորդւոյն՝ Խաչիկ Բ·ի հետ, քանի մը տարի Պոլիս արգելակալուելէ ետք քանի մը տարի ալ ապրած է Սեբաստիա։

Իսկ Գանձակեցիին այն հաւաստումը թէ Մոնոմախ հրամայած է կաթողիկոսին իր աթոռը Սեբաստիա հաստատել եւ այդ տեղէն հովուել իր հօտը (տես ծան. 13), պարզապէս 13րդ դարու պատմագիրին նախանձախնդրութեան պէտք է վերագրել չխոստովանելու համար կաթողիկոսական իշխանութեան բարձումը Պետրոս Ա·ի օրով։

5· Ոչ մէկ տեղեկութիւն հասած է մեզի Պետրոս Ա·ի եւ Խաչիկ Բ·ի Պոլիս անցուցած կեանքին մասին։ Անհաւանական չէ որ յարգանքով վարուած ըլլան բիւզանդական իշխանութիւնները կաթողիկոսներուն հետ։ Անհաւանական չէ նաեւ որ դաւանական միութեան առաջարկներ ներկայացուած եւ նոյն իսկ ճնշումներ կատարուած ըլլան։ Թէ կրօնական ճնշումն ունեցած տեղի, կարելի է հետեւցնել Պետրոս Ա·ի երէց քեռորդիին՝ Անանիայի կամ Ստեփանէի անիգելոս[42] անուանումէն, պաշտօն կամ տիտղոս որ չէր կրնար տրուիլ ոչ-քաղկեդոնականի մը։ Ամէն պարագայի մէջ, կատաղի հակաքաղկեդոնական եւ յունատեաց Մատթէոս Ուռհայեցի Պետրոս Ա·ի մահուան առթիւ զայն կը կոչէ ամենագովելի եւ կը յայտարարէ թէ գլուխ էր Հայաստանեայց եւ պարիսպ սրբոյ եկեղեցւոյ[43]։ Եւ եթէ Օրմանեան նշանախեց մը իսկ չի գտներ որ կաթողիկոսը տկարացած ըլլայ իր դաւանանքին մէջ կամ քաղկեդոնականութեան հակամէտ եղած ըլլայ[44], Հ. Ս. Կոգեան ալ (Հայոց Եկեղեցին, էջ 352), միայն կասկածանքով կը գրէ «···թերեւս քաղկեդոնական»։ Եթէ Պետրոս Ա. քաղկեդոնականութիւնը ընդունած ըլլար, Ատոմ իշխանին երաշխաւորութեան պէտք չունէր Սեբաստիա հաստատելու համար իր բնակութիւնը։

ՀԱՅԿ ՊԵՐՊԵՐԵԱՆ

---

40 Paul Lemerle, *Prolégomènes à une édition critique et commentée des «Conseils et Récits» de Kékauménos*. Bruxelles, 1960, p. 38. Այս աշխատասիրութեան վրայ ուշադրութիւնս հրաւիրած է Հրաչ Բարթիկեան (Երեւան)։

41 Ուռհայեցի, Վաղ·, 104, Երսմ·, էջ 122, Սմբատ, Վենետիկ, էջ 45։

42 Ուռհայեցի, Վաղ·, էջ 106, Երսմ·, էջ 125, Սմբատ, էջ 46։

43 Ուռհայեցի, Վաղ·, էջ 127, Երսմ·, էջ 152։

44 Ազգապատում, էջ 1254։

# ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ԱԹՈՌԻՆ ԲԱՐՁՈՒՄԸ 11 ՐԴ ԴԱՐՈՒՆ ԵՐԿՐՈՐԴ ԿԻՍՈՒՆ

(Շարունակութիւն)

## Բ.

## ԽԱՉԻԿ Բ ԵՒ ՏՈՒԿԻԾԻ ԿՐՕՆԱԿԱՆ ՀԱԼԱԾԱՆՔԸ

*Կոստանդին Թ Մոնոմախի մահէն եւ Թէոդորայի կարճատեւ իշխանութենէն ետք Բիւզանդիոնի գահը բարձրացան Միքայէլ Ստրատիոտիկոս* (21 *օգոստոս* 1056—31 *օգոստոս* 1057) *եւ Իսահակ Կոմնենոս* (1 *սեպտեմբեր* 1057—25 *դեկտեմբեր* 1059)։ *Կոմնենոս գահը յանձնեց Կոստանդին Ժ. Դուկասին, զոր Հայերը յիշատակած են Տուկիծ անունով*։

1058*ին եւ կամ* 1059*ի առաջին ամիսներուն ընթացքին վախճանած էր Պետրոս Ա Գետադարձ կաթողիկոսը եւ թաղուած Սեբաստիայի Ս. Նշան վանքը։ Որչափ ատեն որ կենդանի էր, հայ ժողովուրդին համար միշտ կը մնար Հայոց կաթողիկոսը։ Իր վախճանումէն ետք բնական էր որ իր քեռորդին՝ Խաչիկ Բ, որ կաթողիկոս օծուած էր նախապէս, բարձրանար կաթողիկոսական գահը*։

*Յայտնի չէ թէ Խաչիկ Բ իրապէս կըրցա՞ծ է կիրարկել իր հայրապետական իշխանութիւնը, որովհետեւ Տուկիծ իր գահակալութենէն* (25 *դեկտեմբեր* 1059) *քիչ ետք, յոյն պատրիարքին թելադրութեամբ, ձեռնարկեց Փոքր Ասիոյ Հայերուն եւ Ասորիներուն հետ դաւանական միութիւն հաստատել, ինչ որ յանգեցաւ կրօնական հալածանքի մը*։

*Առանց որոշ թուական մը յիշելու, բայց Հայոց* ՇԸ (508 = 6 *մարտ* 1059—5 *մարտ* 1060) *թիւին տակ պատմուած դէպքերուն շարքին, Ուռհայեցի կը պատմէ թէ Տուկիծ* «խորհեցաւ խորհուրդ չար եւ կամեցաւ բառնալ եւ խափանել զաթոռ հայրապետութեան սրբոյն Գրիգորի ի տանէն Հայոց» *եւ* «յարոյց հալածանս եւ առնէր քննութիւնս պէսպէս յաղագս հաւատոյ Հայաստանեայց ազգիս։ Մանաւանդ յորժամ մեռաւ տէր Պետրոսն, յայնժամ յարեաւ Հոռոմք ի վերայ սուրբ աթոռոյն եւ կամեցան եղծանել զնա եւ կամեցան առ հասարակ դարձուցանել զՀայս ի հաւատն անօրէն Քաղկեդոնի[1]»։ *Սմբատ ամփոփելով կը գրէ*. «Յայսմ ժամանակի խորհեցաւ Տուկիծն խափանել զհայրապետութիւն յազգէն Հայոց, զոր եւ արարն իսկ[2]»։

*Տուկիծ այս նպատակով Սեբաստիայէն Պոլիս կը փոխադրէ Խաչիկ Բ.ը, քաղաքին մէջ խուզարկութիւններ կատարել կու տայ Պետրոս Գետադարձին գանձերը գտնելու համար, ժողովուրդին մէկ մասը կը խոշտանգուի այս առթիւ եւ* «յաւուրսն յանոսիկ բազում վտանգ գործեցաւ ի հաւատս Հայոց», *ինչ որ կը նշանակէ թէ շատերը քաղկեդոնական դաւանութեան յարեցան։ Տուկիծ կը գրաւէ Պետրոսի բոլոր գանձերը, ինչ որ կը գտնեն թէ՛ Սեբաստիա եւ թէ Հայաստան*[3]։ *Երեք տարի Պոլիս Խաչիկ* «բազում վիշտս կրեաց ի յանիրաւ եւ ի մոլի ազգէն Յունաց»։ *Գագիկ Բագրատունի, Ատոմ եւ Ապուսահլ Արծրունի Կոստանդինուպոլիս կը մեկնին եւ մեծ դժուարութեամբ կը յաջողին արձակել տալ Խաչիկ Բ.ը եւ իրեն ընկերացող եկեղեցականները։ Խաչիկ չ՚արտօնուիր սակայն Սեբաստիա վերադառնալ, այլ կը պարտադրուի բնակիլ Թաւբլուր՝ վանքի մը մէջ*։ (*Ըստ Լաստիվերտցիի* Տարնտայ)։

*Մատթէոս Ուռհայեցի Կոստանդին Տուկիծի կը վերագրէ դաւանական միութեան երկրորդ ձեռնարկ մըն ալ։ Խաչիկ կաթողիկոսին մահուան* (ՇԺԴ = 5 *մարտ* 1065—4 *մարտ* 1066) *եւ անոր յաջորդին՝ Գրիգոր Վկայասէրի ընտրութեան առթիւ կը պատմէ գրեթէ կրկնելով ինչ որ գրած էր Խաչիկ Բ.ի Պոլիս տարուելուն առթիւ, թէ Տուկիծ Պոլիս կը հրաւիրէ Ատոմը եւ Ապուսահլը, որոնք կռահելով թէ կայսեր նպատակը դաւանական միութիւնն է, իրենց հետ կը տանին Յակոբ Քարափնեցի աստուածաբան վարդապետը*[4]։

---

[1] *Ուռհայեցի, Վաղ.*, *էջ* 137—138, *Երուս.*, *էջ* 164—165։

[2] *Սմբատ, Վենետիկ, էջ* 56—57, *Մոսկուա, էջ* 51, *Փարիզ, էջ* 75։

[3] *Լաստիվերցի, Երեւան, էջ* 82, *Վենետիկ*, 1844, *էջ* 80. *Սամուէլ Անեցի, էջ* 112, *կը գրէ թէ Տուկիծ «կամէր առնել քաղկեդոնիկ» Խաչիկը*։

[4] *Ուռհայեցի, Վաղ.*, *էջ* 159—169, *Երուս.*, *էջ* 191—193, *Սմբատ, Վենետիկ, էջ* 63, *Մոսկուա, էջ* 64, *Փարիզ, էջ* 78—79։

Յակոբ Քարափնեցի կը պարզէ եւ կը պաշտպանէ Հայաստանեայց Եկեղեցիին վարդապետութեան ուղղափառութիւնը, «բայց սակաւ մի վասն երկբնութեանն (կամ երկութեանն) Քրիստոսի ի կողմն Հոռոմոց կը դառնայ[5]: Այս հաւատաքննութեան ընթացքին, Գագիկ Բագրատունի, զոր Ատոմ եւ Ապուսահլ դաղտնօրէն Պոլիս կը հրաւիրեն, Յակոբ Քարափնեցին կը յանդիմանէ ինքնագլուխ կատարած զիջումին համար, կայսեր առջեւ կը պատռէ անոր պատրաստած միաբանութեան գիրը եւ ինք կը թելադրէ նոր մը, որ կը գրաւէ Մատթէոս Ուռհայեցիի ժամանակագրութեան Վաղարշապատի հրատարակութեան 163—178 եւ Երուսաղէմի հրատարակութիւն 115—214 էջերը: Կայսրը հաստատելով Հայոց ուղղափառութիւնը կը շնորհէ «բազում պարգեւս Գագկայ եւ Ատոմայ եւ Ապուսահլի եւ այլոց իշխանացն»: Թագաւորը եւ իշխանները մեծ փառաւորութեամբ իրենց երկիրը կը վերադառնան: Վերադարձէն ետք, Գագիկ Բագրատունի, որ «յառաջագոյն զայրացեալ էր ընդ Յունաց» իր զինուորներուն խայտառակել կու տայ յոյն «փառաւոր» կինները, եւ չարաչար մահուամբ սպաննել կու տայ Կեսարիոյ հայատեաց մետրոպոլիտը, որ Արմէն անուանած էր իր շունը:

Իրականութեան մէջ, Հայերը Պոլիս ընդունած էին երկու բնութեան վարդապետութիւնը, որ քաղկեդոնականութեան հիմը կը կազմէ եւ յոյն եւ հայ Եկեղեցիներուն դարաւոր բաժանման պատճառն է: Դաւանութեան գիրը, զոր Մատթէոս Ուռհայեցի ամբողջութեամբ պահած է, այս մասին ոեւէ տարակոյսի տեղի չի թողուր: Բիւզանդիոնի կայսրը հայ իշխանները պարգեւներով պիտի չվարձատրէր եւ Գագիկ Բագրատունի, պարգեւներով բեռնաւորուած եւ Հայոց ուղղափառութիւնը հաստատելով վերադարձին ատեն, «զայրացեալ» ըլլալու պատճառ մը պիտի չունենար եթէ իրեն պարտադրուած չըլլար քաղկեդոնականութիւնը:

Ուռհայեցիին կողմէ երկու տարբեր թուականներու տակ եւ տարբեր մանրամասնութեամբ պատմուած երկու դաւանական միութեան ճնշումները կը վերաբերին սակայն միեւնոյն ձեռնարկին, այսինքն Պետրոս Գետադարձին մահէն ետք կատարուած բիւզանդական ճնշումին[6]: Խաչիկ Բ.ի մահէն ետք հալածանքի պատճառ չկար եւ նոր հալածանք տեղի չէ ունեցած:

Ասորիներուն դէմ կատարուած կրօնական հալածանքն ալ կը զուգադիպի այս թուականին:

Միքայէլ Ասորի (1126—1199) կը պատմէ թէ Կոստանդին Տուկիծի օրով Հայոց եւ Ասորիներուն դէմ կրօնական հալածանք մը սկսաւ: Կ. Պոլսոյ պատրիարքը, կը գրէ, հրամայեց Մելիտինէէն աքսորել ամէն անոնք որ կը մերժէին ընդունիլ քաղկեդոնական դաւանութիւնը, թէ՛ Ասորիները եւ թէ Հայերը: Հակաքաղկեդոնականներուն մերժումին վրայ, պատրիարքին հրամանով Հայոց եւ Ասորւոց եկեղեցիներուն գիրքերը, սուրբ խորհուրդը եւ ամէն ինչ որ հոն կը գտնուէր այրուեցան: Յոյները գետինը նետեցին եւ ոտնակոխ ըրին սրբագործուած մարմինը եւ արիւնը, ինչպէս նաեւ սուրբ միւռոնը[7]: Տարբերակի մը համաձայն, «հալածանքը ոչ միայն Ասորիներուն դէմ էր այլ եւ այն բոլոր Հայերուն որոնք բիւզանդական կայսրութեան սահմաններուն մէջ կ'ապրէին: Հրովարտակ մը հրատարակուեցաւ որով հրաման կ'արձակուէր հալածել ամէն անոնք որ կը մերժէին քաղկեդոնական դաւանութիւնը: Հալածանքը շատ բուռն հանգամանք մը ստացաւ, ինչպէս հեթանոսական շրջանին՝ քրիստոնեաներուն դէմ: Այսպէս, երբ բիւզանդական կայսրութենէն դուրս Թուրքերը կը հարստահարէին եւ աւարառութեան կ'ենթարկէին քրիստոնեաները··· կայսրութեան քրիստոնեաները ա՛լ աւելի ճնշուած էին քաղկեդոնականներէն, ինչ որ արդարութեան հակառակ է[8]:

Նոյն պատմագիրը կը պատմէ նաեւ թէ Մելիտինէի ասորի մետրապոլիտը՝ Մար Իգնատիոս Պոլիս կը տարուի ուրիշ եկեղե-

---

[5] Ուռհայեցի, Վաղ., էջ 161—162, Երուս., էջ 194, Սմբատ, Վենետիկ, էջ 64 (Մոսկուայի եւ Փարիզի հրատարակութիւններուն մէջ դաւանութեան գիրը չէ ամփոփուած եւ երկու բնութեան խօսքը չկայ):

[6] Թէ Ուռհայեցի ի՞նչպէս նոյն դէպքը երկու տարբեր թուականներու տակ պատմած է՝ ժամանակագրութեան խմբագրութեան եւ ներկայ բնագրին ուսումնասիրութեան հետ կապուած խնդիր մըն է:

[7] Michel le Syrien, tr. Chabot, III, p. 166a—167 a.

[8] *Idem*, *ibid.*, p. 166 b.

*ցականներու հետ: Պատրիարքին պահանջումով անոր կը ներկայացնէ ասորի Եկեղեցիին դաւանութեան հանգանակը եւ դաւանական ոչ մէկ զիջում կ'ընէ պնդելով* «մի բնութիւն Բանին մարմնացելոյ» *վարդապետութեան վրայ: Այս մերժումին հետեւանքով, ասորի եկեղեցականները կ'աքսորուին Մակեդոնիայի մէջ Գախոս (իմա՛ Գանոս,* Ganos) *լեռը, ուր կը մնան երեք տարի (ճիշտ հաւասար Խաչիկ Բ.ի Պոլիս աքսորին երեք տարիին), եւ վիճաբանութեանց պատրուակին տակ ամէն տեսակ արհամարհալից վարմունքի եւ հարստահարութեանց կ'ենթարկուին*[9]*: Նոյն արհամարհանքը եւ հարստահարութիւնները կրած էր Խաչիկ Բ. Կոստանդինուպոլսոյ մէջ ըստ Ուռհայեցիի*[10]*:*

*Միքայէլ Ասորիի* ժամանակագրութեան *հայերէն համառօտեալ թարգմանութեան մէջ Յոյներուն կատարած սրբապղծութիւնները հետեւեալ կերպով ներկայացուած են:* «Յաւուրս յայսոսիկ հնչեաց սատանայ ի սիրտ պատրիարքին Կոստանդինուպօլսի, որ արար գործ մի սոսկալի հրեշտակաց եւ մարդկան. զի զգրեանն եւ զմեռոնն ուղղափառաց Հայոց եւ Ասորւոց այրել տայր եւ կոխել ոտիւք, որ անգամ հացի եւ ձիթոյ պատիւ ոչ առնէին՝ հաղորդին եւ մեռոնին. եւ ետ տանել զպատրիարքն Աթանաս քսանեւհինգ եպիսկոպոսօք ի Կոստանդինուպօլիս. եւ նախ քան զերթալն նոցա պատառեցաւ այն նախատիչն Քրիստոսի իբրեւ զԱրիոս: Եւ փոխանորդ նորա պատրիարքն արար քննութիւն, եւ նոքա զայրացեալ եւ այրեցեալ սրտով խստագոյնս յանդիմանեցին զնոսա, եւ ի վերայ այսորիկ արգելան ի Գիոս (*ուղղել՝ Գանոս*) կղզի[11]»:

*Հայերէն համառօտագրութեան մէջ յիշուած Աթանաս ասորի պատրիարքը, որ Աթանաս Բ.ը կրնայ ըլլալ միայն (պատրիարք՝* 1058—1063)*, ըստ Միքայէլ Ասորիի ամբողջական բնագրին, դէպի Պոլիս ուղեւորութեան ընթացքին մեռած է*[12]*: Իսկ հալածանքին պատասխանատու յոյն պատրիարքն ալ, որ սրբապղծութիւններ կատարել տուած էր, կարճ ատեն ետք յանկարծամահ եղած է*[13]*: Ըստ հայերէն համառօտ թարգմանութեան, հաւատաքննութիւնը կը կատարէ յանկարծամահ պատրիարքին յաջորդը, տեղեկութիւն որ չի գտնուիր ամբողջական գործին մէջ:*

*Արդ,* 2 *փետրուար* 1059*էն մինչեւ* 9—10 *օգոստոս* 1063 *Պոլսոյ պատրիարքն էր Կոստանդին Գ. Լիխուդէս* (Lichoudes) *եւ իր պաշտօնավարութեան շրջանը կը համապատասխանէ Պետրոս Գետադարձին մահէն մինչեւ Խաչիկ Բ.ի Պոլիսէն վերադարձի շրջանին*[14]*: Կոստանդին պատրիարքին նախորդն էր Միքայէլ Ա. Կերուլերոս, որ* 1058*ին պաշտօնանկ եղած եւ աքսորի ճամբուն վրայ մեռած էր* 21 *յունուար* 1059*ին*[15]*:*

*Ըստ այսմ, հալածանքը սկսած կրնայ ըլլալ Միքայէլ Ա. պատրիարքին օրով, եւ աքսորի ճամբուն վրայ անոր մահն է որ անակնկալ մահուան կրնայ վերագրուած ըլլալ ասորի քրոնիկագրին կողմէ: Այս ենթադրութեան ի նպաստ կրնայ մեկնուիլ Մատթէոս Ուռհայեցիի այն ակնարկութիւնը թէ Տուկիծի օրով հալածանքը աւելի սաստկացաւ Գետադարձին մահէն ետք: Ուրիշ տեղեկութեան մը համաձայն, յոյն պատրիարքը քանի մը ամիս տարբերութեամբ երկու հրովարտակ հրատարակած է: Կարելի է ենթադրել թէ առաջինը Միքայէլ պատրիարքին կողմէ էր եւ հրաւէր մըն էր դաւանական միութեան: Ըստ երեւոյթին, իր նպատակին հասած չըլլալով, երկրորդ հրովարտակ մը հրատարակուած է Կոստանդին պատրիարքին կողմէ, ամէն պարագայի մէջ* 1063*էն առաջ (Թուական Կոստանդին պատրիարքին մահուան), որովհետեւ այդ թուականին Խաչիկ Բ Պոլիսէն արձակուած էր*[16]*:*

*Տուկիծի օրով կատարուած այս հալածանքին մասին կարճ տեղեկութիւն մը պահուած է նաեւ վրացի մատենագրի մը մէջ: Գէորգ (Կիորկի) աբեղայ, իր ուսուցչին՝ Սեւլեռնցի կամ Աթոսցի Գէորգի* Վարքին

---

[9] *Idem*, ibid., p. 168.

[10] *Ուռհայեցի, Վաղ., էջ* 153, *Երսմ., էջ* 184:

[11] Ժամանակագրութիւն Միխայէլի Ասորւոյ, *Երուսաղէմ,* 1872, *էջ* 397: 1870*ի հրատարակութեան մէջ՝ գրեթէ համանման բառերով:*

[12] Michel le Syrien, III, p. 166 b.

[13] *Idem, ibid.*, p. 167 a.

[14] V. GRUMEL, Traité d'Études byzantines. *La Chronologie*, p. 436.

[15] E. AMANN, «Michel Cérulaire», *Dictionnaire de théologie catholique*, X, 2, p. 1679.

[16] V. GRUMEL, *Les regestes des actes du patriarcat de Constantinople*. III. Regestes de 1043 à 1206, p. 18—19.

*մէջ կը գրէ թէ կայսեր քով կը գտնուէին յոյն եւ հայ մեծամեծներ եւ երեւելիներ, որոնց հետ նաեւ Գագիկ Կարսեցի (Կակիս կարելի) եւ թագաւորութեան ուրիշ իշխաններ*... : «Թագաւորը հարցում ուղղեց ուղղափառներու (*քաղկեդոնականներու*) կրօնքին մասին... Յետոյ, հարցուց Գէորգ Լեռնցիին թէ Հայերը արդեօք ոեւէ առնչութիւն ունի՞ն քրիստոնեաներուն հետ: Գէորգ պատասխանեց. «Նոյն իսկ չար (*ոչ-ուղղափառ*) պէտք է կոչել անոնց դաւանութիւնը»: *Եւ թագաւորը ամէնուն ներկայութեան ամօթահար ըրաւ Հայերը*[17]»... :

*Տուկիծի մահէն ետք* (1067), *կը գրէ Միքայէլ Ասորի, Եւդոքսիա կայսրուհիին կարճատեւ իշխանութեան շրջանին, ազատ արձակուեցան ասորի եկեղեցականները, ուրիշ բանտարկեալներու եւ աքսորականներու հետ*[18]: *Խաչիկ Բ աւելի առաջ թաւըլուր ստիպուած էր հաստատել իր բնակութիւնը*:

*Ինչպէս կը տեսնուի, Միքայէլ Ասորի եւ Մատթէոս Ուռհայեցի համաձայն են միայն հալածանքին խստութեան մասին: Հայոց մէջ քաղկեդոնականութիւնը կը թուի բաւական աւեր գործած ըլլալ, ըստ Ուռհայեցիի, իսկ Ասորիներուն մէջ՝ թերեւս նուազ, թէեւ բացայայտ տեղեկութիւն մը չկայ: Ամէն պարագայի մէջ, Փոքր Ասիոյ Հայերը վեց կամ եօթը տարի կը մնան առանց կաթողիկոսի եւ կը բռնադատուին քաղկեդոնական վարդապետութիւնը ընդունիլ, ոմանք վերջականապէս, հալածանքներէն ազատելու համար, եւ ոմանք առ երես:*

*Շահեկան պիտի ըլլար գիտնալ թէ այս հալածանքի շրջանին ի՞նչ եղած է Փոքր Հայքի հայ եպիսկոպոսներուն կամ առաջնորդներուն դիրքը:*

11*րդ դարուն ոչ Կեսարիայի, ոչ Եւդոկիայի եւ ոչ ալ Մելիտինէի առաջնորդներուն անունները ծանօթ են, թէեւ ամենայն հաւանականութեամբ այս քաղաքները ունեցած են իրենց հայ եպիսկոպոսները: Միայն Սեբաստիայի եպիսկոպոսն է որ ծանօթ է, Գրիգոր Մագիստրոսի աշակերտներէն Եղիսէ, զոր գովեստով յիշատակած է Մատթէոս Ուռհայեցի: Ըստ Յովհաննէս Սեբաստացիի անտիպ Սեբաստիայի պատմութեան, եպիսկոպոս ընտրուած է շուրջ* 1028*ին եւ վախճանած* 1064*ին: Հաւանական ենթադրութիւնը այն է որ, եթէ մինչեւ* 1064 *Սեբաստիայի եպիսկոպոս կրցած է մնալ, ստիպուած է առ երես ընդունիլ քաղկեդոնականութիւնը, ինչպէս Ատոմ եւ Աբուսահլ եւ ուրիշները: Անհաւանական չէ նաեւ որ Խաչիկ Բ.ի հետ Պոլիս տարուած եւ անոր հետ Սեբաստիա վերադարձած ըլլայ:*

### Գ.

### ՏՈՒԿԻԾԻ ԿՐՕՆԱԿԱՆ ՀԱԼԱԾԱՆՔԸ ԵՒ ԿԱՐՍԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՎԱԽՃԱՆԸ

1. 1064*ին Ալփարսլան Անին գրաւելէ ետք դեսպան ուղարկելով Կարսի Գագիկ Թագաւորին զայն կը հրաւիրէ իրեն հպատակութիւն յայտնել:*

*Գագիկ Աբասեան*, «այր հանճարեղ եւ իմաստասէր», *հնարք մը կը խորհի իր փոքր թագաւորութիւնը փրկելու համար: Սգաւորի սեւ զգեստ կը հագնի եւ կը նստի սեւ բարձի մը վրայ: Երբ Ալփարսլանի դեսպանը Գագիկը կը տեսնէ սգաւորի զգեստաւորումով, կը զարմանայ եւ պատճառը կ'ուզէ իմանալ: Գագիկ կը պատասխանէ թէ այն օրէն ի վեր որ իր բարեկամը՝ Թուղրուլ պեկ (որ Ալփարսլանի հօրեղբայրն էր) մեռած է, ինք սեւ հագնիլ սկսած է: Դեսպանը՝ զարմացած՝ Ալփարսլանին կը պատմէ ինչ որ տեսած եւ լսած էր: Ալփարսլան, նոյնքան զարմացած եւ հիացած, զինուորական շքախումբով մը կու գայ Կարս եւ Գագիկի հետ «սէր եւ խաղաղութիւն» կը կնքէ, անոր կը հագցնէ արքայական զգեստ եւ զայն «կը փառաւորէ»: Գագիկ ի պատիւ սուլթանին խնճոյք մը կը կազմակերպէ, որուն համար կը պատմուէր թէ* 100,000 *դահեկան ծախսած էր*[19]:

*Ալփարսլանի այցելութենէն եւ Գագիկի հետ կնքուած խաղաղութենէն առեն մը ետք, ըստ Մատթէոս Ուռհայեցիի* «զկնի աւուրց այսոքիկ[20]», *ըստ Սմբատի* «զկնի սակաւ աւուրց[21]», *ըստ Վարդանի* «նեղեալ յեր–

[17] *Լ. Մելիքսեթ-բեկ*, Վրաց աղբիւրները Հայաստանի եւ Հայերի մասին, *Ա*, *էջ* 120:

[18] Michel le Syrien, *ibid.* p. 168.

[19] *Ուռհայեցի, հր. Վաղարշապատ, էջ* 150, *հր. Երուսաղէմ, էջ* 180:

[20] *Ուռհայեցի, Վաղ., էջ* 151, *Երուս., էջ* 184:

[21] *Սմբատ, Վենետիկ, էջ* 60, *Մոսկուա, էջ* 62, *Փարիզ, էջ* 78:

կիւղէ Թուրքացն[22]», ըստ Զամչեանի «ածեալ զմտաւ եթէ ոչ եւս կայ նմա գտանել հանգիստ աշխարհին Հայոց»[23], Կարսը փոխանակելու համար կը դիմէ Բիւզանդիոնի Կոստանդին Դուքաս (Տուկիծ) կայսեր եւ փոխարէն կը ստանայ Ծամնդաւ բերդաքաղաքը եւ ուրիշ վայրեր, իսկ ըստ Զամչեանի «ի նմին իսկ ամի առմանն Անւոյ յամսեանն նոյեմբերի»[24], այսինքն 1064ի նոյեմբերին, կը փոխանակէ Կարսը Ծամնդաւի հետ:

Այս վկայութեան հիման վրայ է որ թէ՛ հայ եւ թէ օտար պատմաբաններ Կարսի փոխանակութիւնը եւ հայկական վերջին անկախ թագաւորութեան վախճանը կը վերագրեն թրքական անմիջական կամ ապագայ երկիւղին[25]: Սակայն ժամանակակից հեղինակներ, ինչպէս նաեւ յետնադարեան քրոնիկագիրներ, որ օգտուած են հնագոյն աղբիւրներէ, չեն հաստատեր այս պարագան:

2· Դէպքերու ընթացքը կը հաստատէ թէ Բիւզանդիոն, Անիի գրաւումէն եւ Բագրատունեաց թագաւորութեան բարձումէն ետք, ձեռնարկած է բառնալ նաեւ Հայաստանեայց Եկեղեցիին անկախութիւնը, յուսալով վերջնականապէս իրականացնել դարերէ ի վեր իր հետապնդած քաղաքանութիւնը Հայոց ընդունիլ տալու համար քաղկեդոնական վարդապետութիւնը, կրօնական միութեան շնորհիւ ապահովելով Հայոց հաւատարմութիւնը բիւզանդական կայսրութեան: Թէ այս քաղաքականութիւնը, հակառակ իր մասնակի յաջողութեանց, ի վերջոյ յանգեցաւ ճիշդ հակառակ արդիւնքի մը, ցոյց տուին ապագայ դէպքերը:

Խաչիկ Բ վախճանեցաւ ՇԺԴ (5 մարտ 1065—4 մարտ 1066) թիւին[26] բայց ցորչափ կենդանի էր, Հայերը ունէին դէթ անուանական կաթողիկոս մը, որ կ՚անձնաւորէր Հայաստանեայց հալածական Եկեղեցին եւ, յաչս ժողովրդեան, կ՚երաշխաւորէր լաւագոյն օրերու գալուստը եւ գերագոյն հոգեւոր իշխանութեան գոյութիւնն ու տեւականութիւնը: Խաչիկ Բ·ի մահէն ետք հարկ էր, հետեւաբար, նոր կաթողիկոս մը ընտրել: Բայց Բիւզանդիոն մերժեց ընտրութիւնը արտօնել:

Ոչ մէկ պատմագիր պարզած է թէ ո՞վ կամ որո՞նք ստանձնեցին Խաչիկ Բ·ի յաջորդին ընտրութեան ձեռնարկը: Ուշագրաւ է որ ո՛չ Սեբաստիայի Արծրունիները եւ ո՛չ Գագիկ Բագրատունի չեն ձեռնարկած եղած եկեղեցական ժողով մը գումարել եւ նոր կաթողիկոս մը ընտրել, Բիւզանդիոնը դնելով կատարուած իրողութեան մը առջեւ: Այս պարագան ցոյց կու տայ թէ Բագրատունի նախկին թագաւորը եւ արքայազն Արծրունիները ո՛ր աստիճան կախում ունէին կայսերական իշխանութենէն: Չէին կրնար անգիտանալ անոնք թէ իրենք յաչս Բիւզանդիոնի կը նկատուէին քաղկեդոնական դաւանութեան հետեւորդներ (տես վերը), այլ եւ թէ առանց կայսեր հաւանութեան ընտրուած կաթողիկոս մը պիտի ենթարկուէր Պետրոս Գետադարձի եւ Խաչիկ Բ·ի ճակատագրին:

Ժամանակակից առաջին պատմագիրը Արիստակէս Լաստիվերցի (11րդ դար) բոլորովին լռութեամբ անցած է այս դէպքերուն վրայէն: Չէ արձանագրած նոյն իսկ Խաչիկ Բ·ի մահը:

Մատթէոս Ուռհայեցի (11րդ—12րդ դար) Խաչիկի մահը յիշելէ անմիջապէս ետք կը գրէ· «Որք մնացեալք էին ի թագաւորացն եւ իշխանացն Հայոց, յայնժամ խնդիր արարին գտանել զմի ոք արժանաւոր՝ զի նստցի յաթոռ հայրապետութեան սուրբ Լուսաւորչին Գրիգորի· եւ գտին մանուկ մի յազգէ Պահլաւունեաց Վահրամ անուն[27]...»:

Ըստ Կիրակոս Գանձակեցիի (13րդ դար) «աշխարհս Հայոց ժողովեալ ի մի վայր կացուցանեն յաթոռ հայրապետութեան[28]» Գրիգոր Պահլաւունին:

---

22 Վարդան, Վենետիկ, 1862, էջ 102 (գլ· ԾԸ):

23 Զամչեան, Բ, էջ 983:

24 Զամչեան, Բ, էջ 984:

25 Օրմանեան, Ազգապատում, էջ 1255, «մէկ կողմէն Սելճուքներու յարձակմանց եւ միւս կողմէ Յոյներուն ոտնձգութեան ենթակուած», Մանանդեան, Քննական Տեսութիւն..., Գ, էջ 62՝ «Թուրքերի երկիւղից», Աճառեան, Հայոց անձնանունների բառարան, Ա, էջ 335՝ «Տուղրիլի եւ Ալփասլանի արշաւանքներուն չդիմանալով», René Grousset, *Histoire de l'Arménie*, p. 615: «Dès qu'Alp-Arslan fut reparti, Gagik-Abas s'empressa de céder sa ville de Kars...», E. Honigmann, *Die Ostgrenze des byzantinischen Reiches*, S. 188, առանց պատճառ ցոյց տալու, 1064ին, եւն:

26 Ուռհայեցի, Վաղ·, էջ 153, Երուս·, էջ 183, Սմբատ, Վենետիկ, էջ 61, Մոսկուա, էջ 56, Փարիզ, էջ 71:

27 Ուռհայեցի, Վաղ·, էջ 154, Երուս·, էջ 185:

28 Գանձակեցի, Երեւան, էջ 95, Վենետիկ, էջ 54, Մոսկուա, էջ 53:

Այս երկու պատմագիրներն ալ նոր ընտրութեան նախաձեռնարկներէն ոչ մէկուն անունը յիշատակած են, բայց, ըստ Ուռահեցիի, գլխաւոր դերակատարները պէտք է եղած ըլլան Գագիկ Բագրատունի, Գագիկ Աբասեան (քանի որ ըստ իրեն Կարսը 1064ին յանձնած է Բիւզանդիոնի) Աշոտ եւ Ապուսահլ եւ ուրիշ իշխաններ: Իսկ, ըստ Գանձակեցիի, «բոլոր Հայերը» այսինքն իշխանները, եկեղեցականները եւ ազդեցիկ աշխարհականները:

13րդ դարու ուրիշ պատմագիր մըն է որ տարբեր տեղեկութիւն մը կը հաղորդէ: Վարդան, Կարսի փոխանակութիւնը յայտնելէ ետք, կը շարունակէ. «Եւ գնացեալ (Գագիկ Աբասեան) առ կայսր խնդրէ հրամանս ձեռնադրել Հայոց պատրիարգ զՎահրամ որդի Գրիգորի Մաժիստրոսի եւ տուկի...», Վարդան[29] Կարսի յանձնումը եւ Գագիկ Աբասեանի դիմումը կը պատմէ Ռոմանոս Դիոժենի պարտութենէն եւ գերութենէն ետք, ինչ որ ժամանակագրականօրէն բոլորովին սխալ է: Սակայն ինք միակ պատմագիրն է որ նոր կաթողիկոսին ընտրութեան մէջ Գագիկ Աբասեանի կատարած դերը արձանագրած է:

Վարդանէն առաջ, Ներսէս Շնորհալի, (12րդ դար) որ բառին բուն իմաստով պատմագիր մը չէ, բայց դէպքերուն գրեթէ ժամանակակից է, աւելի հանգամանօրէն պատմած է իր Վիպասանութեան մէջ Գագիկ Աբասեանի դերը եւ յարակից պարագաները: Նախ Պետրոս Գետադարձին եւ Խաչիկ Բ.ին մահերէն ետք Շնորհալի Հայոց Եկեղեցիին վիճակը կը նկարագրէ հետեւեալ տողերով:

Հայոց հովուացն վախճանեալ,
Տուն Պետրոսի ի բաց բարձեալ,
Որպէս Հեղեայն այն ծերացեալ,
Որով Յունացն ընդ մեզ չարեալ,
Այլում լինել թոյլ ոչ տուեալ,
Զի անտերունչք ասեն եղեալ,
Լիցին ի կրօնս մեր դարձեալ:

Եւ կը շարունակէ.

Յայնժամ արքայն մեր կոչեցեալ,
Գագիկ անուն վերաձայնեալ,
Այն որ ըղկարս ի Յոյնս տուեալ,
Եւ զԾամնդաւ դղեակն առեալ,
Ջանիւ մեծաւ գուն գործեցեալ,
Ինչքս բազումս անթիւ ծախեալ,
Նաեւ ըղկարս նախաասացեալ,
Այսր խնդրոյ փոխանակեալ,
Զի հովուապետ Հայոց դարձեալ,
Նըստցի յաթոռն ունայնացեալ,
Որոյ ըղձից այսր հասեալ,
Եւ մատանեաւ ոսկի կնքեալ,
Մինչ զվերին հրաման առեալ[30],
. . . . . . . . . . . .

Շնորհալիի Վիպասանութեան այս տողերը արձակի վերածած եւ մասամբ ընդլայնած է Սրբոյն Ներսէսի Շնորհալւոյ Պատմութիւն Վարուցն գործին հեղինակը: Պետրոս Գետադարձի վախճանումէն ետք կը գրէ... Մնայր տունս թորգոմեան զեւթն ամ առանց հայրապետի: Քանզի աշխարհս ընդ այն ժամանակս էր ի ձեռն այլազգեաց, եւ աթոռ կաթողիկոսութեան վտարեալ ի Սեբաստիայ, եւ այն ընդ իշխանութեամբ Հոռոմոց, եւ վասն այնորիկ թագաւորք Յունաց ոչ տային թոյլ դնել զոք կաթողիկոս, սակս անառաջնորդ մնալոյ ազգիս մերոյ եւ այնր աղագաւ յինքեանս դառնալոյ: Յայնժամ արքայն Հայոց Գագիկ մեծաւ ջանիւ եւ բազում աշխատութեամբ գուն գործեալ առաքէր առ թագաւորն Յունաց մեծաւ ծախիւք, եւ զամուրն զկարս այսմ խնդրելոյ փոխանակեալ տայր ի ձեռն Հոռոմոց եւ առնոյր հրաման ի թագաւորէն ոսկի մատանեաւ կնքեալ՝ նստուցանել զո եւ կամեսցեն յաթոռ հայրապետութեան Հայոց[31]»:

Այս պատմութեան մէկ տարբերակը կը պարտինք 17րդ դարու արեւմտեան Հայերէնագէտ հեղինակի մը՝ Կղեմէս Կալանոսի: «Յետ մահուան սորա (Պետրոսի), կը գրէ, զամս Դ (4. — Ուղղե՞լ Զ) մնայ առանց կաթողիկոսի աթոռն Հայոց. զի վտարեցաւ աթոռ հայրապետութեան ի Սեբաստիա Կապադովկեցւոց. եւ խափանէին Հոռոմք ձեռնադրել զկաթողիկոս Հայոց. մինչեւ Մարիամ դուստր թագաւորին Գագկայ ի Կա-

[29] Վարդան, էջ 102 (գլ. ԾԸ):

[30] Ներսեսի Շնորհալւոյ Հայոց կաթողիկոսի Բանք չափաւ (Վիպասանութիւն), Վենետիկ, ՌՄՀԹ (1830), էջ 544—545: — Ղ. Ինճիճեան, Ստորագրութիւն Հին Հայաստանեայց, Վենետիկ, 1822, էջ 436, աւելի առաջ, հրատարակած էր Կարսի փոխանակութեան վերաբերեալ այս տեղեկութիւնը:

[31] Սոփերք Հայկականք, ԺԴ, Վենետիկ, 1854, էջ 16—17, Ալիշան, Հայապատում, էջ 348:

րուց խնդրեաց յարքայէն Յունաց· եւ սա առաքեաց զտէր Գրիգորիոս, որդի Գրիգորի Մագիստրոսի· որ թողեալ զհայրենի պատիւն, հետեւեցաւ կրօնաւորութեան· եւ բռնադատեալ նստուցաւ յաթոռ հայրապետութեան ի ՇԺԴ (5 մարտ 1065 – 4 մարտ 1066) թվին Հայոց[32]...։» *Եւ քանի մը էջ ետք* (*էջ* 317), *ընդլայնելով այս տեղեկութիւնը կ'աւելցնէ*· «Վասն որոյ Հայոց արքայն Գագիկ, եւ նորին դուստրն Մարիամ՝ մատուցանելով թագաւորին Յունաց պարգեւս յոլովս եւ զաղաչանս՝ ընկալան ի նմանէ, նստիլ յունայնացեալ աթոռն զԳրիգորիոս Վկայասէրն»։

17*րդ դարու մատենագիր մը՝ Դաւիթ Բաղիշեցի, որ զանազան աղբիւրներէ քաղելով հեղինակած է պատմութիւն մը, ըսելէ ետք թէ Պետրոս Գետադարձին յաջորդած է Խաչիկ Բ, կը շարունակէ*· Եւ յետ սորա (Պետրոսի) խափան եղեւ հայրապետութիւն զամս ԻԴ (24· — Ուղղե՞լ Զ)· զի ոչ տային թոյլ Յոյնքն, զի անճարակ եղեալ, ասեն, Հայք ի կրօնս մեր դարձցեն։ Յայնժամ Գագիկ արքայն Կարուց, գուն գործեալ վասն նորոգման հայրապետութեան, *տայ զԿարս քաղաք իւր վիճակումն ի Թագաւորն Յունաց եւ փոխանակ առեալ զգղեակն Ծամընդոյ եւ հրաման ընկալեալ ի կայսերէն Տիոժլէ (ուղղել Տուկիծէ) ձեռնադրել հայրապետ Հայոց*, զի յորժամ Վասիլ(?) թագաւոր տարաւ զտէր Պետրոսն ի Սեւաստ, ոչ տային թոյլ Յոյնքն համարձակութեամբ կատարել զհայրապետութիւն մինչեւ ցայս վայր, որ թվին ՇԺԴ (5 *մարտ* 1065—4 *մարտ* 1066)[33]։

*Անթուակիր Յայսմաւուրքի մը հեղինակն ալ կը կրկնէ նոյն տեղեկութիւնները*։ «Եւ փոխեցաւ առ Քրիստոս տէր Խաչատուրն (Խաչիկ Բ) ի ՆԾ եւ ի ԺԴ (514 = 1065—1066) թուին կեցեալ կաթուղիկոս ամս ԲԺան (12)· Է (7) ամ ընդ տեառն Պետրոսի, մինչ էր նա կենդանի, եւ Է (7) (ուղղե՞լ Ե) ամ յետ նորա վշտօք եւ տառապանօք։ Եւ այնպէս բռնացան Յոյնք ի վերայ Հայոց եւ Է (7) ամ ի կրօնս իւրեանց պահեցին զՀայք, մինչ որ արքայն Գագիկ մեծաւ ջանիւք գուն գործեալ եւ բազում ինչս ծախեաց եւ զԿարս քաղաք իւր գաւառովն Յունաց տուեալ եւ (*փոխանակ առեալ*) զբերդն Ծամընդոյ եւ ապա կարեաց խափանել զկամս նոցա եւ էառ ի նոցանէ հրաման հաստատել հայրապետ Հայոց[34]»։

*Գագիկի դիմումը եւ Գրիգոր Վկայասէրի ընտրութիւնը, առանց Կարսի յանձնումը այս դիմումին եւ ընտրութեան արտօնութեան հետ կապելու, կը գտնուի նաեւ մասամբ* 1630*ին եւ գլխաւորաբ* 1700*ի շուրջ գրուած հաւաքածոյի մը մէջ*[35]։

*Վերջապէս, Չամչեան* (18*րդ դար*), *Կարսի փոխանակութիւնը վերագրելէ ետք Թրքական սպառնալիքին, եւ յիշելէ ետք յունական արգելքը կաթողիկոսական ընտրութեան, նոր կաթողիկոսին ընտրութեան արտօնութիւնը ստանալու արժանիքը կը վերագրէ Մարիամ իշխանուհիին*· «Իսկ Մարիամ թագուհին կը գրէ, դուստր Գագկայ Աբասեան՝ որ սիրեալն էր եւ պատուեալ յաչս կայսրուհւոյն Եւդոքսեայ՝ բազում աղերսանօք խնդրեալ ի նմանէ, հաճեցոյց զնա հաւանեցուցանել զկայսրն վասն ընտրելոյ զոք կաթողիկոս Հայոց։ Եւ կայսրն զիջեալ հաւանեցաւ ընդ այն, եւ ետ հրաման արքունական գրով· զոր եւ կնքեաց ոսկի մատանեաւ։ Յայնժամ Գագիկ Աբասեան ժողով գումարեալ եպիսկոպոսաց ի Ծամնդաւ՝ ուր ինքն նստէր, խնդիր արար գտանել զոք արժանի կաթողիկոսութեան։ Եւ յետ բազում քննութեան եւ բանից՝ միաբան հաւանութեամբ հաստատեցին ընտրել զՎահրամ զորդի Գրիգորի Մագիստրոսի[36]»։

*Տարօրինակ կրնայ թուիլ որ* 12*րդ եւ* 13*րդ դարու պատմագիրներ եւ յետնագոյն դարու մատենագիրներ, նոյն իսկ անոնք որ Կարսը փրկագինը չեն յայտարարեր կաթողիկոսական ընտրութեան արտօնութեան, Գագիկի կամ Մարիամ իշխանուհիին կը վե–*

---

[32] *Կղեմէս Կալանոս*, Միաբանութիւն Հայոց սուրբ Եկեղեցւոյ ընդ մեծի սուրբ Եկեղեցւոյ Հռովմայ, *Հռոմ*, 1690, *Ա*, *էջ* 313։

[33] *Վազգէն Յակոբեան*, Մանր ժամանակագրութիւններ, *Բ*, *էջ* 339։

[34] *Գարեգին Յովսէփեան*, Յիշատակարանք ձեռագրաց, *Ա*, *էջ* 417—419։

[35] *Բ. Կիւլէսէրեան*, Ցուցակ հայերէն ձեռագրաց Անկիւրիոյ Կարմիր–Վանուցն եւ շրջակայից, *էջ* 720 (*Ձեռագիրը հաւաքածոյ մըն է*)։ — *Մխիթար Այրիվանեցի*, *էջ* 17, *Հայոց կաթողիկոսական ցանկին մէջ կը յիշէ Տէր Խաչիկ Բ· անիշխան* Ե (5) *ամ* (*ուղղե՞լ* Է *ամ*)։

[36] *Չամչեան*, *Բ*, *էջ* 989։

բագրեն արտօնութիւնը ստանալու արժանիքը, մինչ դէպքերուն ժամանակակից Մատթէոս Ուռհայեցի այս դիմումին թեթեւ ակնարկութիւն մը իսկ չէ ըրած: Սակայն Սմբատ Սպարապետի կամ անոր վերագրուած Տարեգիրքը, որուն առաջին մասը Մատթէոս Ուռհայեցիի ժամանակագրութեան համառօտագրութիւնն է, ըսելէ ետք թէ Գագիկ Կարսը Յոյներուն յանձնած է Ալփարսլանի այցելութենէն «զկնի սակաւ աւուրց», առանց անդրադառնալու հակասութեան, կը պատմէ թէ Հայոց թագաւորութեան բարձումէն եւ կաթողիկոսական աթոռին անչքացումէն, այսինքն Բագրատունեաց հարստութեան վախճանէն ետք, Յոյները «կամեցան ի սպառ բառնալ զհայրապետութիւնն յազգէն Հայոց, զոր է (7) ամ ի կրօնս նոցա կեցան Հայք, մինչեւ արքայն Գագիկ մեծաւ ջանիւք գուն գործեալ մեծաւ ծախիւք ապա կարաց խափանել եւ առ հրաման հաստատել վերստին հայրապետ Հայոց զո եւ կամեցին: Ապա խնդիր արարեալ թագաւորն Գագիկ եւ մնացեալ իշխանքն Հայոց գտանել զոք արժանաւոր եւ գտին» Գրիգոր Վկայասէրը[37]:

Տարեգիրքին մէջ պահուած այս տողերը Ուռահեցիի բնագրին վրայ յաւելո՞ւմ մըն են թէ Ուռհայեցիի սկզբնագրէն կորսուած կամ յապաւուած մաս մը, ինչպէս են ուրիշ հատուածներ եւ ամբողջ էջեր, որոնք կը պակսին Ուռհայեցիի Երուսաղէմի հրատարակութեան մէջ: Կարելի չէ այս հարցումներուն պատասխանել: Անհաւանական չէ սակայն որ Տարեգիրքին հեղինակը ըրած ըլլայ այս յաւելումը, կամ գրիչ մը, Տարեգիրքին մէկ ձեռագրին լուսանցքին մէջ արձանագրուած այս տեղեկութիւնը անցուցած ըլլայ բնագրին մէջ:

Բաց ի Ուռհայեցիէն եւ Գանձակեցիէն, վերոյիշեալ բոլոր հեղինակները համաձայն են թէ Գագիկ Կարսեցի, Խաչիկ Բ.ի վախճանումէն ետք, Բիւզանդիոն դիմած է բառնալու համար նոր կաթողիկոսի մը ընտրութեան արգելքը եւ վերահաստատելու համար Հայաստանեայց Եկեղեցիին անկախութիւնը:

[37] Սմբատ, Վենետիկ, էջ 61 (Մոսկուայի եւ Փարիզի հրատարակութիւններուն մէջ այս հատուածը չկայ):

Արտօնութիւնը ստացած է ի գին բազում ջանքերու եւ դրամական ծանր զոհողութեանց, որոնց մասին մանրամասն տեղեկութիւններ չեն տրուած: Սակայն իրարմէ կը տարբերին միայն սա պարագային մէջ թէ արտօնութեան փոխարէն Գագիկ Կարսեցի ստիպուած է Կարսը յանձնել Բիւզանդիոնի եւ իր թագաւորութեան վերջ տալ:

Անհեթեթ պիտի ըլլար ենթադրել թէ Ներսէս Շնորհալի եւ անոր կենսագիրը, որոնք դէպքերուն գրեթէ ժամանակակից են, եւ ամէն պարագայի մէջ աւելի լաւատեղեակ կրնային ըլլալ քան ուրիշները, յերիւրած են Կարսի փոխանակութեան պատճառը:

Փոխանակութիւնը հետեւանքը չէ ուրեմն սելճուքեան Թուրքերուն ազդած երկիւղին: 1064ին կամ յաջորդ տարին թրքական վտանգ զգալի չէր, եւ Գագիկ Կարսեցի մարգարէական շնորհով օժտուած չէր իր մահէն (1069) ետք պատահած դէպքերը գուշակելու համար: Չէր կրնար իմացած չըլլալ նաեւ թէ Ալփարսլան կը գոհանար միայն զանազան պետութեանց հպատակութիւնը եւ հարկատուութիւնը ապահովելով, եւ հայկական միւս փոքր իշխանութեանց ալ վերջ չէր տուած: Եթէ Գագիկ Ալփարսլանի այցելութենէն քիչ ետք Կարսը յանձնած ըլլար, կաթողիկոսական ընտրութեան արտօնութեան փոխարէն ոչինչ ունէր Տուկիծին տալու: Կարս եւ իր շրջանը 1080ին է որ Ալփարսլանի որդւոյն եւ յաջորդին Մելիքշահի որով վերջնականապէս գրաւուած են Սելճուքեաններուն կողմէ Բիւզանդիոնի դաշնակից Բագարատ թագաւորէն[38]:

Թէեւ Զամչեան կը հաւաստէ թէ Գագիկ իր Մարիամ աղջկան դիմումներուն եւ աղաչանքներուն շնորհիւ է որ արտօնութիւնը ստացած է (Մարիամ իշխանուհիին Եւդոքսիա կայսրուհիին հետ բարեկամութեան աղբիւրը անծանօթ է), սակայն Կարսի փոխանակութեան նման կենսական խնդիր մը չէր կրնար առանց Գագիկի ներկայութեան կարգադրուիլ: Թերեւս Մարիամ իշխանուհին ընկերացած է իր հօրը:

3. Կը մնայ փորձել ճշտելու համար Կարսի փոխանակութեան հաւանական թուականը:

[38] M. FAHRETTIN KIRZIOGLU, «Kars», *Islam Ansiklopedisi*, s. 362 a.

*Խաչիկ Բ վախճանած է Հայոց ՇԺԴ* (514 = 5 *մարտ* 1065—4 *մարտ* 1066) *թուականին, հաւանականաբար* 1065*ի ընթացքին, որ կը հաստատուի ժամանակակից ուրիշ դէպքով մը: Խաչիկի մահուան մասին խօսելէ առաջ, Ուռհայեցի եւ անոր հետեւելով Սմբատ, կը յիշատակեն նոյն թուականին բիւզանդական կայսրութեան պալքանեան սահմաններուն վրայ Ուզերու* (*Օղուզներու*) *արշաւանքը, որ սկսած է* 1064*ի աշնան եւ վերջացած է* 1065*ի գարնան*[39]:

*Գագիկ Կարսեցի Խաչիկ Բ.ի մահէն ետք է որ կաթողիկոսութիւնը վերահաստատելու եւ Հայերը բիւզանդական Եկեղեցիէն հեռացնելու համար է որ սկսած է իր դիմումները, հետեւաբար ոչ* 1065*ի գարունէն առաջ:*

*Սամուէլ Անեցիի Ձեռագիրներուն մեծամասնութիւնը ունի հետեւեալ տեղեկութիւնը ՇԺԴ* (514 = 1065—1066) *թիւին տակ, որ Խաչիկ Բ.ի մահուան տարին է:* «Ցայսմ ամի եմուտ Գագիկ ի Կոստանդինուպոլիս[40]»: *Չէ բացայայտուած թէ երկու Գագիկներէն ո՞րն է որ այդ թուականին Պոլիս «մտած» է, այսինքն Բիւզանդիոնի հպատակած, բայց ակներեւ է որ այս տեղեկութիւնը կը վերաբերի Գագիկ Կարսեցիին եւ ոչ թէ Գագիկ Բագրատունիին, որ այդ թուականէն շատ առաջ Բիւզանդիոնի հպատակած էր:*

*Գագիկ Կարսեցիին եւ Տուկիծ կայսեր միջեւ կատարուած բանակցութեանց տեւողութիւնը ծանօթ չէ, բայց նկատելով այն դժուարութիւնները որոնց բախած է հայ թագաւորը, պէտք է տեւած ըլլան առնուազն քանի մը ամիս, եթէ ոչ աւելի երկար, որովհետեւ բնաւ հաւանական չէ որ Գագիկ դիւրաւ համակերպած ըլլայ իր անկախութիւնը կորսնցնել եւ իր երկիրը յանձնել Բիւզանդիոնի: Այս պարագան կրնայ բացատրել թէ ինչո՞ւ ոմանք վեց եւ ուրիշներ եօթը տարի տեւած ըլլալ կ'ըսեն Հայոց բռնադատեալ քաղկեդոնականութիւնը, Գերադարձին մահէն միջեւ Խաչիկի մահը* (*վեց տարի*) *կամ միջեւ Գրիգոր Վկայասէրին ընտրութիւնը* (*եօթը տարի*):

*Այսպէս բոլոր աղբիւրները համաձայն են թէ Պետրոս Գետադարձին մահէն* (1058—1059) *ետք Տուկիծի օրով վեց կամ եօթը տարի Հայերը* մնացին ի կրօնս *Յունաց, այսինքն քաղկեդոնական դաւանութիւնը ընդունեցան Բիւզանդիոնի ճնշման տակ: Իսկ կաթողիկոսութիւնը իրականութեան մէջ դադրած էր շուրջ* 1050*ի վեր կամ նոյնիսկ աւելի կանուխ:*

*Նոր կաթողիկոսի մը ընտրութեան արտօնութիւնը տալէ ետք, կայսրը, ըստ Կղեմէս Կալանոսի, պարտադրած է նաեւ կաթողիկոսական ընտրելին յանձին Գրիգոր Մագիստրոսի որդւոյն՝ Գրիգոր Վկայասէրի*[41]: *Այս տեղեկութիւնը չի հաստատուիր հայկական աղբիւրներով, սակայն անոնց լռութիւնը դիւրաւ կրնայ ըմբռնուիլ: Գրիգոր Վկայասէր պարտադրուած ըլլայ Տուկիծի կողմէ թէ հայ իշխաններուն եւ եկեղեցականներուն ազատ կամքով ընտրուած ըլլայ, երկու պարագային ալ դաւանական հալածանքին գլխաւոր պատճառին քաղաքական հանգամանքը բացայայտօրէն կ'երեւայ: Տուկիծ յունասէր Գրիգոր Մագիստրոսի որդին պարտադրելով՝ Հայոց հաւատարմութիւնը ապահովել կը յուսար: Հայերը, զայն ընտրելով, կ'ուզէին Բիւզանդիոնի հանդէպ իրենց հաւատարմութեան գրաւականը տուած ըլլալ:*

*Բիւզանդական կայսրերը միշտ հետապնդեցին իրենց կայսրութեան ոչ-յունադաւան եւ օտար տարրերը ձուլել կրօնա-*

---

[39] G. OSTROGORSKY, *History of the Byzantine State*, Oxford, 1956, p. 303; *Histoire de l'Empire byzantin*, Paris, 1956, p. 365.

[40] *Սամուէլ Անեցի, էջ* 112: *Կիրակոս Գանձակեցի, Երեւան, էջ* 93, *Վենետիկ, էջ* 53, *նոյնպէս Գագիկ Կարսեցիի համար կ'ըսէ.* «գնաց առ Յոյնս» *Գագիկի հպատակութիւնը նշելու համար:*

[41] *Կղեմէս Կալանոս,* Միաբանութիւն..., *էջ* 313—314: — 1059*ին Միջագետքի դուքսն էր Ահարոն Պուլկար, Գրիգոր Մագիստրոսի մահէն* (1058) *անմիջապէս ետք, հակառակ Կոստանդին Թ Մոնոմախի ոսկեբուլին* (*խրիսովուլ*), *որուն համաձայն Միջագետքի դքսութիւնը կը տրուէր Գրիգոր Պահլաւունիի եւ անոր սերունդներուն* (*Լաստիվերցի «...յազգէ յազգ մինչեւ յաւիտեան»* (*Հրաչ Բարթիկեան,* Բանբեր Մատենադարանի, 5, *էջ* 394, *ծան.* 7):

կան միութեամբ։ Այս քաղաքականութիւնը մասամբ միայն յաջողութիւն գտաւ։ Այն Հայերը, որ կամայ թէ ակամայ քաղկեդոնական եղան ի վերջոյ ձուլուեցան, սակայն ազգին մեծամասնութիւնը կառչած մնաց իր դաւանութեան եւ հալածանքները զինքը մղեցին աւելի խորացնելու իր թշնամութիւնը Բիւզանդիոնի դէմ։ Վկայաէրին ընտրութենէն հազիւ վեց տարի ետք, Ռոմանոս Դիոժէն, երբ Ալփարսլանի դէմ պատերազմին կը ձեռնարկէր, Սեբաստիայի մէջ Հայերուն սպառնաց իրենց կրօնքը ի սպառ ջնջել պատերազմէն յաղթական վերադարձէն ետք։ Հայերը աղօթեցին որ պարտուի։ Դիոժէն պարտուեցաւ եւ իր պարտութիւնը փրկեց Հայաստանեայց Եկեղեցիին անկախութիւնը[42]։

[42] Շնորհալիի վկայութեան անտեղեակ չեն Չամչեան եւ Օրմանեան։ Առաջինը կը յիշէ Վիպասանութեան այն տողերը որ կը վերաբերին նոր կաթողիկոսի մը ընտրութեան յունական արգելքին, որպէս զի Հայերը «լիցին ի կրօնս մեր դարձեալ։» (Բ, էջ 989)։ Օրմանեան նոյնպէս ծանօթ է Գագիկ Կարսեցիի դիմումներուն եւ Վիպասանութեան (Ազգապատում, էջ 1249)։

Երկու հեղինակներն ալ Կարսի փոխանակութեան բուն պատճառը քողարկած են։

Դիտողութիւն. Այս յօդուածին նախորդ մասին մէջ հետեւեալ վրիպակները սպրդած են. ՀԱ. էջ 146՝ ուղղել 1045 (փոխանակ 1025ի), էջ 152՝ 1044 (փոխանակ 1024ի) եւ էջ 159՝ 1045 (փոխանակ 1025ի)։

ՀԱՅԿ ՊԷՐՊԷՐԵԱՆ

# ՏԱՏԻԱՆԻ ՀԱՄԱԲԱՐԲԱՌԸ ԵՒ Ս. ԵՓՐԵՄԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆԸ

Ս. Եփրեմի Համաբարբառի Մեկնութեան Փրանսերէն թարգմանութիւնը լոյս հանելու առիթով, Հ. Louis Leloir, իբր ներածութիւն, չահեկան ուսումնասիրութիւն մը կատարած է Տատիանի, անոր Համաբարբառին, ինչպէս նաեւ Ս. Եփրեմի Մեկնութեան շուրջ[1]։

Հայ բանասիրութեան համար ալ հետաքրքրական այդ գրութիւնը կ'ուզենք ծանօթացնել ՀԱ.ի ընթերցողներուն։

Ամբողջական թարգմանութիւն մը կատարել չէ մեր նպատակը, սակայն չենք կրնար նաեւ գոհանալ միայն ընդհանուր կէտերու ամփոփումով։ Ուստի կը համարձակինք քանի մը մանրամասնութիւններու անդրադառնալ, օգտակար ըլլալու համար։

## Ա. ՏԱՏԻԱՆ

### Կենսագրական գծեր

Տատիան, իր իսկ վկայութեան համաձայն, ծնած է Ասորիք (ἐν τῇ τῶν Ἀσσυρίων γῇ), մօտաւորապէս 120ին։

Սոացած է ասորի կրթութիւն, բայց լաւ ծանօթ է նաեւ յունարէնի։ Բ. դարու կէսին Հռոմ երթալով, կը մկրտուի եւ կ'աշակերտի Ս. Յուստինոսի։

Բնութեամբ խիստ, մանաւանդ թէ ծայրայեղ, քրիստոնէութեան դարձէն վերջ Πρὸς Ἕλληνας ճառով՝ բուռն կերպով կը հերքէ հելլէն փիլիսոփայութիւնը։

Յուստինոսի մահէն վերջ կ'իյնայ սակայն մոլորութիւններու մէջ. կ'ընդունի Յաւիտեաններու գոյութիւնը, կը ժխտէ Ադամի արդարացումը, կը յարի մանաւանդ ժուժկալներու աղանդին, եւ Եւսեբիոսի, Եպիփանի եւ Յերոնիմոսի համաձայն, նոյնիսկ անոնց գլուխ կ'անցնի։

Թէեւ քիչ մը վերապահութեամբ ընդունելու է այդ հաստատումները, բայց իրողութիւն կը մնայ, թէ Տատիան թշնամի է ամուսնական յարաբերութեան, ինչպէս նաեւ ոգելից ըմպելիներու, եւ այդ ձգտումներով փոփոխութիւններ ներմուծած է աւետարաններու մէջ։

Մատթ. Ա. 18, «Մինչչեւ եկեալ առ միմեանս» սքողիչ տարբերակով եղած է «Մինչչեւ (Մարիամ) տուեալ էր առն[2]»։ Ղուկ. Բ. 36, Աննայի համար ըսուած՝ «կեցեալ ընդ առն ամս եօթն» խօսքին մէջ՝ տարին վերածուած է օրուան։

[1] Ephrem de Nisibe, Commentaire de l'Évangile Concordant ou Diatessaron. Traduit du Syriaque et de l'Arménien. Introduction, traduction et notes par Louis Leloir, moine de Clervaux. Publié avec le concours de la Fondation Calouste Gulbenkian. Paris 1966.

[2] Ս. Եփրեմի Մատենագրութիւնք, Վենետիկ 1836, Բ. հատոր, էջ 21։